

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1951 Թ.

# ՊԻՈՆԵՐ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ*

*Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

Նա մի աշխույժ, ժրաջան
Պատանի էր վառվռուն,
Աչքերում փայլը գարնան,
Միտքը թռչում էր հեռու:

Ջերմ կարոտով նա սրտանց
Ուսումնարանը սիրեց,
Իր պայծառ միտքը լարած
Միշտ գերազանց սովորեց:



Իղձերը վառ, թևավոր,
Նա կատարել է հիմի,
Գիտի մասերը բոլոր
Խառատային դազգահի:

Հրաշալի մեքենան
Իր կամքին է ենթարկում,
Որի վրա այժմ նա
Դետալներ է մշակում:

Շատ-շատերն են նրա պես
Ուսումնարան ընդունվել,
Հայրենիքը բոլորին
Թև ու թռիչք է տվել:



Մեկը դառնում է խառատ,
Մեկը՝ ձուլող մի բանվոր,
Մեկը՝ դարբին, կամ քարհատ,
Պետք են բոլորն էլ այսօր:

Ուսումնարանն է տալիս
Վարպետություն, գիտություն...
Նրանք կյանք են դուրս գալիս
Սրտերում ծով խնդություն:



Նրանք դառնում են անվախ
Քաջ մարտիկներ մեր կյանքի,
Կառուցողները խիզախ
Մեր մեծ պայծառ գալիքի:

Աշխատանքով ու երգով,
Սրտերով ջերմ ու ցնծուն
Իրենց ավանդն են դնում
Խաղաղության մեծ գործում:




Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՄԵՆՔ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ԵՆՔ ՈՒԶՈՒՄ

Ֆոտոէտյուդ Վ. ՓԻԶԽՈՒԼՅԱՆԻ



# ՄԵՔԵՆԱՎԱՐԸ



ԱՆԴՐԱՆԻԿ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՒՔՄԱՋՅԱՆԻ

Մեքենավար Աբաջյանը եկավ տոնական շորերը հագին, կրծքի վրա Լենինի, «Աշխատանքային Կարմիր Դրոշի» և այլ շքանշաններ շարած։



— Եկա՜վ... Եկա՜վ...— ուրախացած բացագանչեցին երեխաներն ու դեմ վազեցին։

Աբաջյանը բռնեց նրանցից երկուսի ձեռքն ու տարավ հսկայական բակի պարտեզը։ Նստեցին ծառի տակ դրած նստարանին, նայեցին մեղմ կարկաչող շատրվանին, շուրջը փռված ծաղիկներին, լսեցին թռչունների ծլվլոցը...

— Այսօրվա դեպքն առանձին բան չէ, — սկսեց Աբաջյանը,— դեպոյից քիչ հեռու, մազութի բաքի խողովակը ներսի կողմից փակվել էր։ Շոգեքարշը պետք է մեկներ, բայց մազութը չէր գալիս։ Ի՞նչ անել։ Շատ փորձեցինք դրսի կողմից բացել անցքը, բան դուրս չեկավ։ Մի ելք էր մնում. մտնել բաքը և խցանն անցքից հանել։ Մինչ կանգնած հնարների մասին էին մտածում, ես վերցրի սանդուղքը, հենեցի բաքին, բարձրացա վեր, հետո սանդուղքը կախեցի բաքի մեջ ու սկսեցի իջնել... Լավ է, որ բաքը կիսատ էր, թե չէ դժվար կլիներ։

— Կխեղդվես, մի՛ իջնի,— ձայն տվեց դեպոյի պետը։ Բայց ես արագ իջա։

Մեքենավարը մի պահ լուռ նայեց երեխաների լարված դեմքերին։ Երեխաները ուշադիր շունչները պահած սպասում էին շարունակությանը։

— Հետո՞, հետո՞,— չհամբերելով հարցրին երեխաները։

Աբաջյանը ժպտաց.

— Սուզվեցի, մի ակնթարթում բացեցի խողովակի բերանը, դեն նետեցի բամբակի հետ լերդացած ու քարացած մազութը և դուրս եկա։ Հավաքվածները թափվեցին վրաս, սկսեցին շորերս մաքրել...

— Էլի՛ պատմիր, քեռի՛ ջան, էլի,— խնդրեց Սուրիկը։

— Օրինակ՝ ի՞նչ...

— Ձեր շոգեքարշի հետ պատահած դեպքի մասին։

— Շատ լավ,— ասաց Աբաջյանը, վերցրեց ոտքի մոտ ընկած մի չոր ճյուղ, երկու կես արեց ու խոսեց.

— Մարդու համար ամենակարևորը նվիրվածությունն է Հայրենիքին։ Եթե անկեղծ սիրում ես քո երկիրը, ապա միշտ պատրաստ ես նրա համար ամեն ինչ անել...

1943 թվականն էր... Մեր զորքերը ֆաշիստական բանակներին ետ էին շպրտում դեպի Արևմուտք։ Ինձ հանձնարարվեց ռազմաճակատ հասցնել մի կարևոր էշելոն։ Օգնականիս՝ Կարոյի հետ շոգեքարշ նստե-

ցինք։ Գնում ենք գիշեր ու ցերեկ և ժամանակից շուտ բեռը հասցնում նշանակված վայրը։ Վերադառնում ենք։ Արդեն Լենինականի դեպոյումն ենք։ Դեպոյի պետ՝ ընկեր Եղիազարյանը ողջունում է մեզ ու մեկնում մի հեռագիր.

— Հաղորդակցության ճանապարհների մինիստրությունից է... Շնորհավորում են ձեզ՝ առաջադրանքը փայլուն կերպով կատարելու համար։

Վերցնում եմ հեռագիրը, կարդում և ինչպես մարտիկը բացագանչում.

— Ծառայում եմ Սովետական Հայրենիքին...

— Դե, գնացեք, հանգստացեք,— ասում է դեպոյի պետն ու սեղմում ձեռքս։

Մի ժամ չէի հանգստացել, երբ եկավ օգնականս՝ Կարոն։

— Քեռի,— ասաց նա հևալով,— շո՛ւտ, կանչում են դեպո։

— Ինչո՞ւ, ի՞նչ է պատահել...

— Չգիտեմ, ընկեր Եղիազարյանն ասաց, որ գտնեմ քեզ։

Հագնվեցի ու վազեցի։ Մտա դեպոյի պետի կաբինետը։ Սա բարձրացրեց գլուխը։

— Ի՞նչ կա, ի՞նչ է պատահել, ընկեր Եղիազարյան,— անհամբեր հարցնում եմ ես։

— Հանգստացիր, նստիր, խնդրեմ,— ասում է նա, աթոռ առաջարկում և շարունակում,— առանձին բան չի պատահել, ստացել եմ հրաման՝ անհրաժեշտ է կես ժամ հետո նոր գնացք ուղարկել... Մեքենավարները գնացել են, առաջադրանքն էլ շատ պատասխանատու է, կարո՞ղ ես...

«Կարո՞ղ ես» մտքումս կրկնեցի նրա խոսքն ու ասացի.

— Անհնարին ոչինչ չկա, ընկեր պետ. ես պատրաստ եմ...

— Դե՛, գործի անցիր. շոգեքարշը կես ժամ հետո միացած լինի գնացքին...

— Լսո՛ւմ եմ,— ասում եմ ես ու գնում օգնականիս հետ դեպո։ Ստուգում ենք շոգեքարշը, անիվները, մխոցներն ու արգելակները, հետո դիտում ենք հնոցը ու զարմացած իրար նայում։

— Այս ի՞նչ բան է, հրակայուն աղյուսներից չորս հատ պոկվել ընկել են։

— Է՜, պրծավ, էլ գնալ չենք կարող,— ասում է Կարոն։

— Ո՞նց թե՝ չենք կարող, իսկ առաջադրա՞նքը, դա անհնարին բան է, պետք է աղյուսները տեղը դնել։

Կարոն մի այնպիսի հայացքով ինձ նայեց, որ կարծես ուզում էր ասել.

«Հո չի՞ խելագարվել»։

— Տե՞ղը դնել, ասում ես,— հարցնում է նա։

— Այո, ի՞նչ կա որ։

— Դա անհնարին է... Հնոց մտնելու համար անհրաժեշտ է քսան ժամվա սառեցում, իսկ անցել է ընդամենը երկու ժամ, գիտե՞ս թե ինչ տաքություն կա հիմա այստեղ, իմ խելքով՝ երկու հարյուր աստիճանից ոչ պակաս։

— Գիտեմ, բայց... գուցե ուրիշ շոգեքարշ կտան,— ասացի ես ու գնացի դեպոյի պետի մոտ։



— Բոլոր շոգեքարշերը գծումն են, մյուսները վերանորոգվում են, պետք է ձեռով գնաք,— կտրուկ ասաց նա։

Հայտնեցինք հնոցի վնասվածքի մասին։ Նա մտածմունքի մեջ ընկավ։

— Սառեցման համար տասնութ ժամ է հարկավոր, իսկ ուրիշ շոգեքարշ չկա, պետք է հայտնել Անդրերկաթուղու բաժանմունքի պետին։

— Մի՛ հայտնեք, ընկեր պետ,— ասում եմ ես նայելով Եղիազարյանի մռայլված դեմքին,— ինքս կանեմ...

— Արգելում եմ, զգուշացնում եմ քեզ. ոչ մի ռիսկ չանես, հասկացա՞ր, դա կյանքը կորցնել է նշանակում,— ասաց նա ու վերցրեց հեռախոսը։

Ընկերոջս հետ դուրս եկա։

— Պետք է աղյուսները տեղը դնել հենց հիմա,— ասում եմ նրան ու չթողնելով, որ խոսի, խնդրում եմ, որ բերի մի աղյալ։ Նա քիչ հետո բերում է աղյալը, որը կոխում եմ շոգեքարշի մոտ գտնվող ջրի բաքի մեջ և ինքս էլ շորերով մտնում ջուրը։ Դուրս եմ գալիս, վերցնում եմ թաց կավը, քսում երեսիս, ձեռքերիս, աղյալով փաթաթվում ու բարձրանում շոգեքարշ։ Կարոն ուզում է ետ պահել, բայց ես գոչում եմ.

— Շո՛ւտ, տուր ունելին ու շաղախած ցեմենտը։—Նա տալիս է։ Մտնում եմ հնոցը։ Դեռ թաց եմ, ոչինչ չեմ զգում։ Դնում եմ երկու աղյուսը, վերցնում երրորդը։ Արդեն չորանում է վրաս։ Սա էլ եմ դնում, վերցնում եմ չորրորդը։ Կավը սկսում է երեսիցս պոկվել... Շունչս կտրվում է... Վերջին աղյուսը դնում եմ տեղն ու հազիվ գոչում.

— Դուրս քաշիր, Կարո՜...

Էլ ոչինչ չզգացի։ Ուշքի եկա Կարոյի ձեռքերի վրա՝ ջրի բաքի մեջ... Քթիցս արյուն էր գալիս, շորերս այրվել էին։ Հանգստացա։ Անցավ կես ժամ։ Գնացի պետի մոտ։

— Շոգեքարշը պատրաստ է, ընկեր պետ. մեկնելու հրաման տվեք։

Եղիազարյանը զարմացած դեմքիս նայեց.

— Հանա՞ք ես անում։

— Բոլորովին... շոգեքարշը պատրաստ է...

— Ռի՞սկ ես արել...

— Դե, քեռուն այդ բանը կասե՞ն...

— Լավ չես արել, քեռի՛, լավ չես արել,— ասում է նա, ժպտում ու մոտենալով գրկում է, սեղմում կրծքին։

Քսան րոպե հետո մեր շոգեքարշը նորից սուրում էր լեռնանցքներով, կտրելով տարածությունները։

Աբաջյանը լռեց։ Երեխաներն ազատ շունչ քաշեցին, ծափահարեցին։

— Եթե նվիրված ես քո Հայրենիքին, ժողովրդին, ապա բոլոր տեսակի արգելքները ոչինչ են,— վերջացրեց Աբաջյանն ու ոտքի կանգնեց...

— Քեռի՛, էլի պատմիր,— ձայնեցին երեխաները, թռչկոտելով անվանի մեքենավարի շուրջը։

— Մյուս անգամ,— ասաց նա ու քայլեց դեպի տուն։ Գնում էր նա ու նրա կրծքի վրա, արևի շողերի տակ փայլում էին շքանշանները, պատվավոր երկաթուղայինի կրծքանշանները, բազմաթիվ մեդալներն ու Սովետական Միության Գերագույն Սովետի դեպուտատության կրծքանշանը։






ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Իմ հայրը հայտնի
Դարբին է ուժեղ.
Եվ ճանաչում են
Նրան ամեն տեղ։
Վաղ առավոտյան
Գնում է գործի
Ծառերի տակով
Մեր լայն փողոցի։
Նրա հետ մեկտեղ՝
Եղբայրս խառատ,
Վարպետներ հմուտ,
Աշակերտներ շատ։
Եվ արևը դեռ
Հեռվում չծագած,
Հայրս ցեխումն է,
Դոգնոցը հագած։
Ծանր լծակը
Ոտքով նա սեղմում,
Եվ շոգեմուրճը
Գործի է դնում։
Ելնում է, իջնում
Շոգեմուրճն արագ,
Զորս կողմը սփռում
Կայծեր ու կրակ.
Ելնում է, իջնում
Պողպատե սալին,
Ձևեր է տալիս
Շիկնած երկաթին։
Հայրս մասեր է
Շինում բազմաթիվ՝
Առանցք ու լծակ,
Գլան, թափանիվ։
Գյուղում էլ եղա
Վարի ժամանակ.
Կտրում էր հողը,
Ինչպես սուր դանակ,
Հինգ խոփանի մեծ
Գութանը հզոր.
Դա էլ է հայրս
Պատրաստել մի օր։
Հայրիկս երկու
Օգնական ունի.
Լավ են կատարում
Ինչ գործ էլ լինի։
Երբ գործարան եմ
Երբեմն գնում,
Դիտում դարբնոցը
Եվ հորս նայում,
Հպարտանում եմ
Նրանով ես էլ.
Ու բոլորին էլ
Ուզում եմ ասել՝
—Ստալին պապին է
Ճանաչում նրան,
Հայտնի դարբին է,
Ստախանովակա՜ն...

——o——



# ԱՌԱՋԻՆ ԾԱՂԿԱՆԿԱՐԸ

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

**1**

*— Ա՜յ, այս տունը իմ պապիկն է շինել,— ասաց Սուրիկը քաշելով Ռուբիկի թևից, երբ նրանք տուն էին վերադառնում տարեվերջի առաջին քննությունը տալուց հետո։*

*Ռուբիկը չլսելու տվեց։ Նա արդեն շատ էր լսել այդ մասին. բայց Սուրիկը չէր ուզում վիճել։*

*— Նայիր, Ռուբի՛կ, ա՜յ, այս տունը։*

*— Դե դու արդեն այդ մասին ասել ես, գիտե՛մ,— պատասխանեց Ռուբիկը դժգոհ։ Նրա մտքից առանց այդ էլ չէր հեռանում այդ օրվա ստացած «երեքը»։*

*— Բայց այս մեկը դու դեռ չես տեսել,— համառեց Սուրիկը։*

*Ռուբիկը նոր միայն նկատեց, որ Սուրիկը բոլորովին ուրիշ շենք է ցույց տալիս։*

Այդ շենքը, դեռ երեկ, փայտամածներով էր պատած, իսկ այսօր փայտամածներն արդեն չկային։ Նրանց առջև կանգնած էր չորս հարկանի մի գեղեցիկ շենք։ Երկուսն էլ հիացմունքով նայում էին կամարակապ պատուհաններին ու դռներին, գեղեցիկ պատշգամբներին։ Ռուբիկի հայացքը կանգ առավ շենքի ճակատին փորագրված ծաղկանկարների վրա։ Հիացմունքից քիչ մնաց ճչար. «Ի՜նչ գեղեցիկ է»։ Ապա ինչ-որ բան հիշելով ասաց.

— Իսկ ծաղիկները քո պապիկը չի փորագրել. նա ծաղիկներ փորագրել չի կարող։

— Իսկ դու անհաջող ծաղիկներ ես նկարում։ Հիշո՞ւմ ես, անցյալ տարի իմ մակետը փչացրիր քո ծաղիկներով։

— Իմ ծաղիկներո՞վ... քո մակետն էր անհաջող, դրա համար էլ ցուցահանդեսում ուշադրության չարժանացավ։ Դու դեռ սպասիր, ես ա՛յ, այսպիսի ծաղիկներ պետք է փորագրեմ շենքերի վրա։

Մինչև տուն հասնելը նրանք այլևս չխոսեցին։ Միայն մի անգամ Սուրիկն ուզեց ցույց տալ իր պապիկի կառուցած շենքերից մեկը, բայց ժամանակին հիշեց, որ այդ մասին արդեն ասել է։

## 2

Սուրիկի պապը՝ վարպետ Ավագը նշանավոր շինարար էր։ Իզուր չէր, որ Սուրիկը նրանով պարծենում էր։ Վարպետ Ավագը քաղաքի գրեթե բոլոր շենքերի վրա աշխատել էր։ Նրա տաշած քարերը կառուցված շենքերի վրա էլ ճանաչվում էին։ Եթե ուրիշներն էլ չճանաչեին, ինքը վարպետ Ավագը ճանաչում էր։ Փողոցով անցնելիս, նա հաճախ էր Սուրիկին ասում.

— Այն վարդագույն քարը տեսնո՞ւմ ես, ե՛ս եմ տաշել. այն երկու սպիտակներն էլ իմ տաշածներն են։

Սուրիկն արդեն այդպիսի շատ քարեր էր ճանաչում և իր ընկերներին ցույց տալով ասում էր՝ «այս շենքն իմ պապն է շինել»։

Ռուբիկն ու նա միևնույն բակում էին ապրում և առաջին դասարանից սովորում միևնույն դպրոցում։ Սուրիկը նրան էլ էր ծանոթացրել պապի քարերի հետ։

Առաջին քննությունը տալուց հետո, նրանք որոշեցին հենց նույն օրը միասին պատրաստվել հաջորդ առարկայի քննությանը։

Երբ տղաները ներս մտան, վարպետ Ավագը թախտի վրա նստած թերթ էր կարդում։ Նրանց տեսնելով վարպետը թերթը մի կողմ դնելով հարցրեց.

— Հը՜, ինչպե՞ս եք...

Սուրիկն այդ հարցին սպասում էր, իսկ Ռուբիկը մի պահ շփոթվեց։ Դե ինչպե՞ս ասեր, որ «երեք» է ստացել։ Դա հո «երկուսից» քիչ է տարբերվում։

Սուրիկն ասաց, որ «չորս» է ստացել և աչքի տակով նայեց Ռուբիկի կողմը։ Ռուբիկը գլուխը խոնարհեց։

— Ես «հինգ» պիտի ստանայի, բայց... մի բան մոռացել էի,— ավելացրեց Սուրիկը։

— Իսկ դո՞ւ... դու Ռուբիկ, երևի երկու բան էիր մոռացել, հը՞,— ասաց վարպետ Ավագը անհանգստացած։

Ռուբիկը ոչինչ չպատասխանեց։ Նա վերցնելով գրքերի պայուսակը դուրս փախավ սենյակից։



## 3

Քննությունները վերջացան։

Սուրիկը փոխադրվեց հաջորդ դասարան։ Ճիշտ է Ռուբիկը մի առարկայից

«երեք» ստացավ, բայց նա էլ փոխադրվեց։

Ամառվա ամիսներին նրանք չհանդիպեցին իրար։ Սուրիկը քննություններից հետո գնաց գյուղ՝ մորաքրոջ մոտ, իսկ երբ վերադարձավ, Ռուբիկն այլևս նրանց բակում չէր ապրում։ Ռուբիկի հայրը նոր բնակարան էր ստացել և նրանք փոխադրվել էին քաղաքի մյուս ծայրը։ Սուրիկը հույս ուներ, թե սեպտեմբերի մեկին կհանդիպի Ռուբիկին, բայց այդ էլ չեղավ։ Ռուբիկը դասի չէր եկել, իսկ երբ դասարանի ղեկավարը ներկա-բացակա արեց, Ռուբիկի ազգանունը բոլորովին չկար։ «Դե պարզ է, հո չի կարող նա այսքան հեռու դպրոց գալ, երևի ուրիշ դպրոց է տեղափոխվել», եզրակացրեց Սուրիկը և շատ ափսոսաց, որ այսուհետև ուշ-ուշ պիտի հանդիպեն իրար։

Մի անգամ նրանք հանդիպեցին Պատանի հանդիսատեսի թատրոնում։ Սուրիկն սկզբում չճանաչեց Ռուբիկին։ Եվ ինչպես ճանաչեր. Ռուբիկը բոլորովին փոխվել էր։ Նա ֆաբգործուսի համազգեստով էր։ Ռուբիկն ինքը ճանաչեց Սուրիկին և մոտենալով նրան հարցրեց.

— Հը՛, ոնց են գործերդ, նորից «հինգեր» ես ստանում, թե՞ էլի բաներ ես մոռանում։

— Երեքն էլ գնահատական է,— կըմկըմաց Սուրիկը կարծելով, թե Ռուբիկը դրա համար միայն գոհ պիտի լինի։

— Թո՛ղ, այդպես մի՛ խոսիր, «երեքն» էլ, իհարկե, գնահատական է, բայց ամոթ է «երեք» ստանալը։

Սուրիկն զգաց իր սխալը և դրանից ավելի կարմրեց։

— Իսկ դու դպրոց չե՞ս գնալու,— հարցրեց նա շոշափելով Ռուբիկի համազգեստը։

— Ինչպե՞ս թե «չես գնալու»...

Ներկայացումն արդեն սկսվում էր։

— Մի օր կգամ տուն մի լավ կխոսենք, — ասաց Ռուբիկը և հրաժեշտ տալով մոտեցավ առաջին շարքում նստած իր ընկերներին։

Սուրիկը մնացել էր զարմացած։ Նա անընդհատ Ռուբիկի մասին էր մտածում։ Մերթ պատկերացնում էր նրան խառատի դազգահի մոտ կանգնած, մերթ շոգեքարշ վարելիս ու չէր հասկանում, թե ինչպես կարող էր այդ պատահել։ Չէ՞ որ Ռուբիկը որոշել էր քանդակագործ դառնալ և... վատ էլ չէր քանդակում։

Այս մտքով էր տարված նա, երբ վարագույրը բացվեց։

## 4

Վարպետ Ավագի տրամադրությունը սովորականից բարձր էր։ Նա թերթի սովորական ընթերցանությունը ավարտելուց հետո, գորգածածկ թախտի վրա, փոքրիկ Թոռան հետ, ինչպես ինքն էր ասում, «գզվում էր»։



Սուրիկի տրամադրությունն էլ էր բարձր։ Դեռ երկու ամիս առաջ վարպետ Ավագը տանը պատմել էր մի տաղանդավոր պատանու մասին, որն իր հետ աշխատում էր շինարարության վրա։

— Ոսկե ձեռքեր ունի,— ասում էր նա,— նշանավոր շինարար է դառնալու։ Իզուր չէ, որ շինարարության վրա նրան «Ոսկե ձեռքեր» են անվանում։

Վարպետ Ավագը տուն գալով այդպես էլ ասաց.

— «Ոսկե ձեռքերը» այսօր մեզ մոտ է գալու։

Սուրիկը շատ էր ուզում տեսնել «Ոսկե ձեռքերին»։ Ախր Ավագ պապիկը գրեթե ամեն օր պատմում էր նրա մասին։ Նա պատկերացնում էր, որ այդ «Ոսկե ձեռքերը» մի

հաղթանդամ, լայնաթիկունք երիտասարդ է, ուժեղ ու համակրելի։ Հո պապը այդքան չէ՞ր գովի մեկ ուրիշին։

Սուրիկի համբերությունը հատնում էր։ Նա շուտ-շուտ մոտենում էր պատուհանին ու նայում բակի կողմը. բայց «Ոսկե ձեռքերը» չէր երևում։

Հանկարծ նա տեսավ, որ բակ է մըտնում Ռուբիկը։ «Ի՞նչ լավ ժամանակ եկավ, մտածեց Սուրիկը. «Ոսկե ձեռքերին» էլ կտեսնի»։

Վարպետ Ավագը Ռուբիկին տեսնելով տեղից վեր կացավ ու ժպտալով բարևեց նրան։ Ներս մտավ Սուրիկի մայրը և բոլորին հրավիրեց ճաշի։ Երբ նա տեսավ Ռուբիկին, համբուրելով նրա ճակատը հանդիմանեց.

— Ինչո՞ւ շուտ-շուտ չես գալիս, Սուրիկը քեզ հաճախ է հիշում։

Ճաշասենյակում Սուրիկն անհանգստացած հարցրեց.

— Պապի՛կ, բա «Ոսկե ձեռքերին» չե՞նք սպասելու։

— Ինչպե՞ս, դու նրան դեռ չե՞ս տեսել։ Նա արդեն եկել է,— պատասխանեց վարպետ Ավագը և աչքով արեց Ռուբիկին։

Սուրիկը ոչինչ չէր հասկանում։ Պապը ցույց տվեց Ռուբիկին։

— Ահա և մեր «Ոսկե ձեռքերը»։ Ռուբի՛կ, ծանոթացիր Սուրիկի հետ։

Բոլորը ծիծաղեցին, իսկ Ռուբիկը կարմըրած ասաց.

— Դե հո իմ անունը «Ոսկե ձեռքեր» չի, ինձ կատակով են այդպես անվանում։

— Ոչ մի կատակ,— ասաց վարպետ Ավագը,— Ռուբիկն իսկապես ոսկե ձեռքեր ունի։

Եվ նա նորից պատմեց «Ոսկե ձեռքերի»՝ Ռուբիկի մասին։ Պատմեց նրա փորագրած ծաղկանկարների, նրա պատրաստած գեղեցիկ խոյակների մասին։ Սուրիկը գդալը ձեռքին, կարծես թե քարացել էր։ Նա ակնապիշ նայում էր Ռուբիկին և թվում էր թե նոր էր միայն ճանաչում նրան։

5

Ճաշից հետո վարպետ Ավագի առաջարկությամբ նրանք գնացին տեսնելու այն շենքը, որի վրա ֆաբզործուսն ավարտելուց հետո առաջին անգամ աշխատել էր Ռուբիկը։

Տուֆաշեն գեղեցիկ շենքը գործարանային այգու մեջ էր։ Պատշգամբներն ու դարավանդները կախված էին տերևախիտ ակացիաների վրա։ Շենքի կամարակապ ճակատը նայում էր ուղղաձիգ այն ծառուղուն, որը կիսում էր ամբողջ այգին։

— Ի՞նչ գեղեցիկ շենք է,— ասաց Սուրիկը։

— Որքան լավ են ծաղկանկարները։ Նայի՛ր, Սուրիկ, այն կամարն ինչքա՞ն սիրուն է։ Ռուբիկի աշխատանքն է,— շեշտեց վարպետ Ավագը, ձեռքը դնելով Ռուբիկի ուսին։

Սուրիկը նայում էր մերթ ծաղկանկարներին, մերթ Ռուբիկին և նրան թվում էր, թե Ռուբիկը բոլորովին փոխվել է, մեծացել, անճանաչելի դարձել։ Նա մոտեցավ բռնեց Ռուբիկի կոշտացած ձեռքը և ջերմորեն թափահարեց։ Հետո նա հազիվ լսելի ասաց.

— Ռուբի՛կ, երբ ճարտարապետ դառնամ, իմ կառուցած շենքերն էլ այսպես կծաղկազարդե՞ս։

— Իհարկե, միայն հիմա հարկավոր է սովորել, լավ սովորել, հինգերո՛վ։

— Ես պիտի սովորեմ, ես պիտի ճարտարապետ դառնամ,— ավելի ամուր սեղմելով Ռուբիկի ձեռքը շշնջաց Սուրիկը։

— Ես էլ պիտի սովորեմ, հենց այս շենքում։ Գիտե՞ս, Սուրիկ, սա բանվորական գիշերային դպրոց է։ Իսկ հետո... հետո էլի կարելի է սովորել։

Սուրիկը նորից ամուր սեղմեց Ռուբիկի ձեռքը, կարծես դրանով հավանություն էր տալիս նրա որոշմանը։ Մինչ վարպետ Ավագը Սուրիկի մորը ցույց կտար իր տաշած քարերը, նրանք ձեռք ձեռքի տված անթարթ նայում էին վարդագույն շենքին և ասես նրա մեջ տեսնում էին բազմաթիվ այդպիսի շենքեր՝ դպրոցներ, թատրոններ, բնակելի տներ, որ նրանք պետք է կառուցեին ապագայում։






ՑԶՈ ԼԻՆ
Չինաստանի նոր դեմոկրատական Երի-
տասարդության Միության Կենտկոմի
պիոներական բաժնի վարիչի տեղակալ

Նկ. ԱՆ. ՉՈՐԴԱՋՅԱՆԻ

2 տարի առաջ, 1949 թ. հոկտեմբերի մեկին Չինաստանը Ժողովրդական Ռեսպուբլիկա հռչակվեց:

Չինական ռևոլյուցիան, Կոմունիստական պարտիայի առաջնորդ Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ, հաղթանակեց: Երկրից վռնդվեցին անգլո-ամերիկյան իմպերիալիստները և նրանց ծառաները՝ Չան Կայ-շիի բանդիտները: Ժողովուրդը դարձավ երկրի իսկական տերը: Նա սկսեց նոր, երջանիկ կյանք կառուցել:

Չինական ռևոլյուցիան աշխատավորների երեխաների համար բաց արեց դպրոցի դռները: Դպրոցներում ստեղծվեցին պիոներական կազմակերպություններ:

Չին ժողովուրդը գիտե, որ Սովետական Միությունը նրա անկեղծ բարեկամն է, որ խաղաղությունը կհաղթի պատերազմին, որովհետև խաղաղության դրոշակակիրն է աշխատավորների մեծ առաջնորդ Ստալինը:

Տպագրում ենք մի հոդված, նվիրված չինական պիոներների կյանքին ու աշխատանքին:



Կանտոնի երեխաները ողջունում են ժողովրդա-ազատագրական բանակի զորամասերի մուտքը քաղաք:

Չինաստանի պատանի պիոներների կազմակերպությունն իր երկար ու փառապանծ պատմությունն ունի: Դեռ 1925 թվին, չինական Մեծ ռևոլյուցիայի շրջանում, Ցխան քաղաքում ստեղծվեց «Աշխատավորների երեխաների կազմակերպություն»: Դա երեխաների առաջին կազմակերպությունն էր:

Դուք հավանաբար գիտեք, որ 1927 թվին Չան Կայ-շին դավաճանեց ռևոլյուցիային և փորձեց այն խեղդել միլիոնավոր աշ-



«Չինաստանի պիոներները» ամսագրի շապիկը: Ամսագիրը լույս է տեսնում Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայում:

խատավորների արյան մեջ: Բայց ռևոլյուցիոն Չինաստանը անձնատուր չեղավ: Տասնյակ տարիներ նա հերոսաբար պայքարում էր դավաճանների և ինտերվենտների դեմ:

Այդ տարիներին երկրի սովետական շրջաններում ստեղծվեցին պիոներական առաջին կազմակերպությունները:

Չինաստանի պատանի պիոներները իրենց հայրերի ու մայրերի, ավագ եղբայրների ու քույրերի հետ միասին կատաղի պայքար էին մղում Չան Կայ-շիի, ճապոնացիների և ամերիկացիների դեմ: Այդ տարիներին թշնամու թիկունքում ստեղծվեցին օտարերկրյա զավթիչներից ազատագրված փնդարձակ շրջաններ: Ազատագրված շրջանի ամեն մի գյուղ ուներ իր պիոներական կազմակերպությունը: Պիոներները շատ լուրջ պարտականություն էին կատարում՝ նրանք հավաքում էին մետաղյա լոմ՝ զենք պատրաստելու համար: Բայց սա պիոներներին քիչ թվաց: Այդ ժամանակ նրանց շարքերում ծավալվեց հինգ արգելքների հայրենասիրական շարժումը: Թշնամիներին ու դավաճաններին ճանապարհները ցույց չտալ, այս էր առաջին արգելքը: Չասել, թե որտեղ է թաքցրած ուտելիքը, այս էր երկրորդ արգելքը: Թշնամիների նամակները չտանել, քաղցրավենիք չվերցնել թշնամիներից, չկարդալ նրանց գրքերը: Սրանք էին մնացած երեք արգելքները:

Այս արգելքները շատ հասարակ էին թվում, բայց դրանք կատարելու համար հարկավոր էր սեփական կյանքից ավելի սիրել հայրենիքը:

Շան-սի Չախարում, Խեբեյի սահմանամերձ շրջանում, մինչև այսօր էլ հիշում և պատմում են պատանի հովիվ Վան Էր-սյաոյի մասին:

Մի անգամ, երբ նա լեռներում արածացնում էր հոտը, ճապոնական բանդիտները բռնեցին նրան: Նրանք ուզում էին, որ տղան հայտնի մերձակա գյուղի ճանապարհը: Այդ գյուղում գտնվում էին ժողովրդական բանակի թիկունքային աշխատողները: Տղան ճապոնական բանդիտներին տարավ այն լեռները, որտեղ գտնվում էր ժողովրդական 8-րդ բանակը: Ճապոնացիները ուշ հասկացան իրենց սխալը: Նրանք արդեն կորցրել էին հարյուր մարդ: Գազազած ճապոնացիները սպանեցին Վան Էր-սյաոյին: Փոքրիկ հովիվը ընկավ հերոսի մահով, խիզախորեն կատարելով հինգ արգելքներից մեկը:

Այդպես էին պայքարում չին պիոներները թշնամու դեմ: Նրանք արիաբար շատ զրկանքներ էին կրում: Նրանցից շատերը պատերազմի տարիներին նույնիսկ օթևան չունեին. չունեին թուղթ, թանաքաման, վրձին, սեղան, աթոռ, բայց համբերատար կերպով սովորում էին: Նրանք սովորում էին նույնիսկ կատաղի ռմբակոծման ժամանակ, մութ գետնափորներում, քարայրներում: Չին պիոներները հավատում էին, որ կգա այն օրը, երբ իրենց գիտելիքներն էլ օգտակար կլինեն հայրենիքի համար:

Եվ այդ օրը եկավ: Չին ժողովուրդը մեծ հաղթանակ տարավ: Երկրում հռչակվեց ժողովրդական ռեսպուբլիկա: 1949 թվականին Չինաստանի նոր դեմոկրատական Երիտասարդության Միության Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ ստեղծվեց Չինաստանի պատանի պիոներների կազմակերպություն:

Այժմ Չինաստանում երեխաները երջանիկ են ապրում: Չինական ռևոլյուցիայի հաղթանակը վերադարձրեց նրանց մանկությունը, ազատեց ամեն տեսակի զրկանքներից: Գյուղերում և քաղաքներում նրանց ծնողները հողի, գործարանների և բոլոր հա-

բըստությունների իսկական տերերը դարձան։

Չինաստանի պիոներների դևիզն է՝ «Հայրենիքի շինարարության, Մաո Ցզե-դունի մեծ գաղափարների իրականացման համար եղի՛ր պատրաստ»։

Չին պիոներները, որ երկար տարիներ զրկված էին ուսման հնարավորությունից, ագահաբար ձգտում են դեպի գիտությունը։ Չինաստանում դպրոցական հասակի շատ երեխաներ կան՝ մոտ 64 միլիոն 720 հազար հոգի։ Դրանց կեսն արդեն սովորում են։ Պիոներներն ընդգրկված են զանազան խմբակներում, հաճախում են թանգարանները, գործարանները, ուսումնասիրում են իրենց հայրենիքը։ Ամռանը նրանցից շատերը հանգըստանում են ճամբարներում։

Պիոներները համառ աշխատանքով բարձր առաջադիմության են հասնում։ Նըրանք օգնում են միմյանց։ Իշցզյաչժուան քաղաքի 7-րդ տարրական դպրոցում 11 աշակերտ մայրենի լեզվից ու թվաբանությունից ետ էին մնում։ Չինաստանում բարձըր գնահատականը համարվում է 100 բալլ։ Այս աշակերտները մայրենի լեզվից ստանում էին 47 բալլ, իսկ թվաբանությունից՝ 38։ Պիոներները օգնեցին նրանց և նըրանք շատ շուտով բարձրացրին իրենց ուսման առաջադիմությունը։

Չին պիոներները իրենց ուսումը համատեղում են հասարակական-օգտակար աշխատանքի հետ։ Չինաստանում պիոներներից շատերին ժողովուրդը սիրով անվանում է «փոքրիկ ուսուցիչներ»։ Նրանք գյուղերում ու քաղաքներում օգնում են վերացնելու անգրագիտությունը։

Սա հեշտ գործ չէ։ Չինաստանի նախկին կառավարությունը ժողովրդին դիտմամբ պահում էր խավարի մեջ։ Բացի այդ, ի՞նչպես կարող էին մարդիկ սովորել, երբ նրանք ապրում էին ծայրահեղ աղքատության մեջ, երբ մանկությունից աշխատում էին ամենավատ պայմաններում, ծանր աշխատանքից չէին կարողանում ուղղել մեջքները։ Ահա թե ինչու երկրում այդքան շատ անգրագետ մարդիկ կային։ Նոր Չինաստանում բոլորը կարող են և պետք է սովորեն։ Եվ ձգտումը դեպի գիտությունն այնքան մեծ է, որ դըպրոցները և ուսուցիչները չեն բավականացնում։ Եվ ահա օգնության են գալիս «փոքրիկ ուսուցիչները»՝ պիոներները։ Նրանք գրագիտություն են սովորեցնում այն երեխաներին, որոնք դպրոց չեն գնում, օգնում են գիշերային դպրոցներին։

Միայն Շանդուն գավառում 1838 «փոքրիկ ուսուցիչներ» գրագիտություն են սովորեցնում 5912 մարդու։

Պիոներներն ակտիվորեն մասնակցում են նաև անտառատնկմանը, որ անց է կացնում հիմա կառավարությունը։ Օրինակ՝ 1950 թվականի ապրիլին Կալգան քաղաքի պիոներները տնկել են 80 հազար ծառ։

Բոլոր պիոներները լավ են հասկանում, որ իրենց երջանիկ մանկության համար պարտական են Չինաստանի Կոմունիստական պարտիային և նրա ղեկավար Մաո Ցզե-դունին։ Բոլոր պիոներները լցված են ջերմ սիրով դեպի Մեծ Ստալինը և Սովետական Միությունը, որոնք նրանց հայրենիքին երջանիկ ապագայի ճանապարհն են ցույց տալիս։

«Մեր ապագայի փարոսը»,— այդպես են անվանում Չինաստանի պիոներները Սովետների երկրին։ Նրանք հսկայական հետաքրքրությամբ կարդում են գրքեր սովետական երեխաների կյանքի մասին, դըպրոցների մասին, պիոներական աշխատանքների մասին, կլանված դիտում են սովետական կինո ֆիլմերը։ Պիոներները շատ դըպրոցներում քննարկել են «Թիմուրը և նրա կոմանդան» հրաշալի գիրքը և կազմակերպել իրենց թիմուրական ջոկատները։

Չինաստանի պիոներական կազմակերպությունները օգտագործում են սովետական պիոներների փորձը։ Նրանք մեծ հաջողությունների են հասնում ազատ ու երջանիկ Չինաստանի կառուցման գործում։





ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

# Նամակ Ամերիկայից

Հեռվում՝ խաղաղ օվկիանոսի
Հարավային լուրթ ափին,
Մայր մտավ Լոս-Անժելոսի
Ծխով պատած գորշ արփին:
Խոր քուն մտան երկինք ու լեռ,
Ձուկն էլ ջրում չի խաղում,
Բայց չեն քնել ու լույս կա դեռ
Մի ցուրտ, խոնավ նկուղում:
Լամպի առաջ դալուկ դեմքով
Մի պատանի լուռ նստած,
Դեռ գրում է դողդոջ ձեռքով
Թղթի վրա կռացած.—
«Կարմիր Մոսկվա, Ստալինին.
Դու մեր հույս ու սրտակից,
Այս նամակը կես գիշերին
Գրում եմ քեզ շատ հեռվից:
Ես քո մասին շատ եմ լսել,
Քեզ հոգուս չափ եմ սիրում,
Դու բոլորին, հայրս է ասել,
Երջանիկ կյանք ես բերում:
Բայց ի՞նչ գրեմ միայն ձեռքով,
Ինչպե՞ս ցույց տամ կյանքը մեր...
Երանի թե մի հրաշքով
Ունենայի զույգ թևեր...
Հենց երեկ էր փոքրիկ Ջիմին
Կոչ գրելիս բռնեցին,
Արյունլվա արին նրան
Ու շապիկը պատռեցին:
Թոմին այսօր տնից տարան,
Նա քաջություն էր արել՝
Մի մեծ շենքի պատի վրա
Աղավնի էր նկարել...
Իսկ մեր մասին, էլ ինչ ասեմ՝
Գուցե գիտես ամեն բան,
Մորս հույսը հիմա ես եմ,
Հորս երեկ բանտ տարան:
Բանվորական մի ժողովում
Շատերի պես նա խոսել,
Մեզ համար հաց, իսկ աշխարհին
Խաղաղություն էր ուզել:
Մեծ եղբորս ստիպեցին,
Չէր ցանկանում կռվել նա,
Բռնի ուժով զենք տվեցին
Ուղարկեցին Կորեա...
Նա սպանվեց Կորեայում,
Հայրս էլ՝ դժվար բանտից գա,
Փոքրերին էլ չեն խնայում,
Հարուստներին խիղճ չկա:
Բայց հակառակ նրանց կամքին
Ես էլ կոչեր եմ գրում,
Որպեսզի շուտ հաղթանակի
Խաղաղությունն աշխարհում»:






*ՀՄԱՅԱԿ ՍԻՐԱՍ*

*Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ*

Երեկո էր։ Տաջիկստանի մայրաքաղաք Ստալինաբադում լույս էր, ինչպես ցերեկը։ Տաջիկստանը տոնում էր Միութենական ռեսպուբլիկա հռչակվելու քսանամյակը։ Ես և իմ տաջիկ ընկերները թատրոնի դահլիճում այդ երեկո շատ երգ ու նվագ լսեցինք, ոգևորվեցինք պարողների արվեստով, բայց ամենից դուրեկանը երիտասարդ երգիչ Սատիմի ելույթն էր։

Համերգից հետո, ինձ և եղբայրական ռեսպուբլիկաներից եկած գրողներին տաջիկ վիպասան Ջալալ Իկրամը հրավիրեց իր տուն՝ ընթրիքի։ Երբ ընթրիքի ժամանակ խոսքը հասավ համերգին ու Սատիմին, կին պրոֆեսոր Սառա Յուսուպովան ժպտաց ու ասաց.

— Գիտե՞ք ինչ էր նրա երգած երգերից մեկի բովանդակությունը։

Մենք բավարար պատասխան չէինք կարող տալ, որովհետև տաջիկերեն չգիտեինք. բացի այդ մեզ ավելի շատ գրավել էր երգի դուրեկան եղանակը, հմայիչ կատարումը։

— Կուզե՞ք՝ պատմեմ։

— Խնդրում ենք,— ասացինք միաբերան։

— Բայց մի քիչ հեռվից պիտի սկսեմ։ Սառան հանդիսավոր տոնով սկսեց.

— Հայրենական պատերազմի տագնապալից օրերն էին՝ 1941 թվականի օգոստոս ամիսը։ Լենինգրադը հերոսաբար պաշտպանվում էր։ Ֆաշիստական զորքերի գրոհն ուժեղանում էր։ Ամեն տեղ, թե կրակի առաջավոր գծում, թե գործարաններում, թե երկաթուղիներում, մարդիկ մի լոզունգ ունեին՝ «ամեն ինչ թշնամուն ջախջախելու համար, ամեն ինչ ռազմաճակատի համար»։

Բոլոր կազմակերպությունները իրենց պարտականությունները ունեին։ Հատկապես երկաթուղայինները մեծ աշխատանք էին կատարում։ Նրանք ամեն օր ռազմաճակատ էին բերում սովետական հայրենիքի պաշտպանների նոր ու նոր խմբեր։ Բերում էին զինամթերք, հաց և այլ ապրանքներ հերոս քաղաքի պաշտպանների՝ բանվորների և մյուս աշխատողների համար։ Այդ օրերին ամեն մի վագոնը հաշվի էր առնված Լենինգրադում։ Մի վագոն։ Հիմա հեշտ է ասել. բայց այն օրերին մի վագոնն անգամ մեծ գործ էր կատարում ռազմաճակատի համար։

Եվ ահա, երկաթուղու կայարանում, պահեստային գծերի վրա ստուգում են, թե ինչ վագոններ են կանգնած։ Ստուգեցին և գտան, որ մի քանիսը վերանորոգման կարիք ունեն։ Անմիջապես վերանորոգեցին ու տրամադրեցին։ Մի քանիսն ավելորդ բեռներից ազատեցին և նույնպես տրամադրեցին ռազմաճակատին։ Բայց ահա նաև մի վագոն։ Վագոնում խնամքով դարսված են դասագրքեր։

Տարիներ առաջ Լենինգրադը Տաջիկստանի համար դասագրքեր տպագրելու շնորհը էր վերցրել, քանի որ Ստալինաբադի տպարանները դեռևս չէին կարողանում բավարարել գրքի օրեցօր աճող պահանջը։

Եվ ահա 1941—42 ուսումնական տարվա դասագրքերից մի քանիսը լենինգրադցիները խնամքով տպագրել էին, բարձել վագոն... բայց պատերազմը խանգարում էր, որ դասագրքերը ժամանակին տեղ հասնեն։

Ի՞նչ անել վագոնի դասագրքերը. չէ՞ որ վագոն է պետք։ «Դատարկե՞լ արդյոք։ Իսկ ո՞ւր տանել դասագրքերը», ինքն իրեն հարց էր տալիս մատակարարման վարչության աշխատող Պոկրասովը։

— Գուցե որպես վառելանյութ հանձնե՞նք,— անվստահ ասաց աշխատողներից մեկը։

Պոկրասովը ոչինչ չպատասխանեց։ Նա մի շարք կարգադրություններ արեց, ծոցատետրում ինչ-որ նշումներ կատարեց տաջիկական դպրոցների դասագրքերով բեռնված վագոնի մասին և երեկոյան գնաց զեկուցման։ Նա ամեն օր մատակարարման գործերի մասին զեկուցում էր ընկեր Ժդանովին։

Եվ ահա Ժդանովը լսում է մատակարարումների մասին։

— Լա՜վ, լա՜վ,— երբեմն ասում էր նա,— ամբողջ հայրենիքն է օգնում Լենինգրադին, իհարկե, շատ կարևոր է Լենինգրադի ռազմաճակատը։



— Ընկե՛ր Ժդանով, բոլոր ուժերով կաշխատենք ապահովել փոխադրումները։ Վագոնները... ինչքան որ կար այդ է...

— Բոլո՞րը... լավ ստուգե՞լ եք։ Չկա՞ն այս կամ այն անկյունում դեռ անօգտագործելի մնացածները։

— Ոչ, բացի մեկից։

— Այդ ի՞նչ վագոն է։

— Տաջիկստանի դպրոցների համար տպագրված դասագրքերով է բեռնված... քանի օր պիտի գնա վագոնն այս պայմաններում, որ տեղ հասնի։

Ժդանովը ուշադիր լսում է։

— Հետո՞, հետո՞,— հարցնում է նա։

— Հետո մտածում ենք դատարկել վագոնը։ Ոմանք ասում են դասագրքերի կապոցներն օգտագործենք որպես վառելիք... Իսկ ես...

— Իսկ դուք՝ ի՞նչ։

— Ես ոչինչ չպատասխանեցի. այժմ զեկուցում եմ ձեզ. խնդրում եմ ձեր կարգադրությունը։

— Իզո՜ւր, իզուր՝ ոչինչ չեք պատասխանել... այո, Լենինգրադը այժմ կարևոր, շատ կարևոր ռազմաճակատ է. բայց Տաջիկըստանի լուսավորության գործը նույնպես ռազմաճակատ է։ Դասագրքերով բեռնված վագոնն առաջին իսկ գնացքով ուղարկել Տաջիկստան՝ Ստալինաբադ։

... Այստեղ Սառա Յուսուպովան մի պահ լռեց։ Երևում էր, որ հուզմունքը խեղդում էր նրա կոկորդը։ Նա թաշկինակով սրբեց աչքերը, մի կում ջուր խմեց, ապա առաջ տարավ խոսքը։

— Եվ ահա, սեպտեմբեր ամսին մենք Ստալինաբադում հավաքվում ենք դիմավորելու... Դիմավորում ենք դասագրքերով բեռնված վագոնը, որ ուղարկել է ռուս մեծ ժողովրդի զավակ Ժդանովը տաջիկական լուսավորության ճակատի աշխատողներին։

— Մենք կհաղթենք,—ոգևորված գոչում է տասերորդ դասարանի աշակերտ Սատիմը,— մենք կհաղթենք, որովհետև, որովհետև...

Եվ նա այլևս խոսքը չի կարողանում շարունակել։ Մի՞թե պարզ չէ, թե ինչ զգացումներ են հորդում երիտասարդի ներսում։ Սատիմը 1942 թվականի գարնանը հաջողությամբ ավարտում է միջնակարգ դպրոցը և խնդրում է ուղարկել իրեն Լենինգրադի ռազմաճակատը։

Ռազմաճակատում Սատիմն, իհարկե, աչքի ընկավ։ Սակայն նա աչքի ընկավ նաև երգելով։ Եվ երբ հնչեց հաղթանակի շեփորը, նա զորացրվեց ու վերադարձավ հայրենի քաղաքը։ Մի քիչ հանգստացավ ու մի օր էլ խնդրեց՝ իրեն ուղարկել Լենինգրադ։ Նա ուզում էր իր պաշտպանած քաղաքում երաժշտություն սովորել, ձայնը մշակել։ Եվ ահա, այժմ Սատիմը մեր ռեսպուբլիկայի լավագույն ու սիրված երգիչներից է...

Ռեսպուբլիկայի քսանամյակի հանդիսավոր նիստին նվիրված համերգում Սատի-



*մի ձայնը հնչում էր զվարթ ու առնական։ Նա երգում էր ժողովուրդների եղբայրության երգը. նա երգում էր ահա այս պատմության մասին, որն արդեն գեղեցիկ լեգենդ է դարձել մեր մանուկ ու երիտասարդ սերնդի համար, մեր դպրոցականների համար։*

*— Ահա թե ով է Սատիմը,— բացականչեց Սառայի պատմությամբ հմայված ունկնդիրներից մեկը։*

*Մեր ականջում դեռ հնչում էր Սատիմի ձայնը. առանձին շեշտով նա երգում էր.*

*— Լայնարձակ է հայրենի երկիրն իմ...*

---




*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

Մեր կոլխոզի այգիներում
Աշունն իր գորգն է փռել,
Ծառերը խիտ ու գույնզգույն՝
Մրգերով են զարդարվել:

Եվ սալորը, դեղձն ու թուզը
Օրորվում են զեփյուռից,
Կարմիր նուռը և ընկույզը
Մեզ կանչում են ճյուղերից:

Ողկույզները չեկ խաղողի
Ծանրացել են թփերում,
Շողերի տակ ջերմ արևի
Շողշողում են ու ժպտում:

Այգեպանն է շրջում ահա
Ու հիանում մրգերով,
Չէ՞ որ ամեն մի ծառը նա
Խնամել է ջերմ սիրով:

Ծով է միրգը այգիների
Հայրենիքում հարազատ...
Աշխատում ենք տարեց-տարի,
Որ բերքը լինի միշտ առատ:

# ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ԱՇԽԱՐՀԻՆ



Բանաստեղծ Ն. Զարյանը խաղաղության կողմնակիցների Ռեսպուբլիկական կոնֆերանսում զեկուցելիս:

Խաղաղություն: Այս խոսքը ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց շուրթերին է, այն հարազատ է և մոտիկ է բոլոր աշխատավորներին:

Ամերիկայի Միացյալ Նահանգների և Անգլիայի իմպերիալիստները չեն ցանկանում, որ բոլոր երկրների ժողովուրդները միմյանց հետ ապրեն խաղաղ և ստեղծագործ կյանքով:

Իմպերիալիստները հրահրում են նոր համաշխարհային պատերազմ: Այդ պատերազմը աշխատավորներին կբերի չտեսնված աղքատություն և անասելի տառապանքներ: Նրանք իրենց հրեշավոր նպատակների համար պատրաստ են ոչնչացնելու տասնյակ միլիոնավոր մարդկանց: Սակայն աշխարհի ժողովուրդները չեն ցանկանում պատերազմ, նրանք ավելի ու ավելի են ուժեղացնում պայքարը հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի: Ամբողջ աշխարհի աշխատավորության, երկրագնդի հասարակ մարդկանց սրտերը լցված են եղբայրական ջերմ ըզգացումով դեպի հզոր Սովետական Միությունը: Նրանք հանձին Սովետական Միության տեսնում են խաղաղության հզոր պաշտպանին և ամբողջ աշխարհի ժողովուրդների անվտանգության հուսալի պատվարին:

Վերջերս մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում կայացավ Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի պլենումը: Պլենումը միահամուռ կերպով պաշտպանեց Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը 5 մեծ տերությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Անգլիայի, Ֆրանսիայի, Չինաստանի և Սովետական Միության միջև խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ:

Սովետական մարդիկ մեծ խանդավառությամբ ընդունեցին Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի որոշումը:

Մեր Հայրենիքի բոլոր վայրերում՝ ֆաբրիկաներում, գործարաններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում և ձեռնարկություններում կայացան միտինգներ նվիրված Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի որոշմանը: Մեր երկրի աշխատավորները պատրաստակամություն հայտնեցին մեկ մարդու պես իրենց ստորագրությունը դնելու Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, և նորից ցույց տալու իրենց վճռականությունը խաղաղությունը պաշտպանելու գործում:

Սեպտեմբերի 12-ին Երևանում տեղի ունեցավ Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսը:

«Սովետական ժողովուրդը խաղաղության պահպանման և ամրապնդման համար մղվող պայքարում» զեկուցումով հանդես եկավ բանաստեղծ Նաիրի Զարյանը: Կոնֆերանս էին եկել բանվորներ ու կոլտնտեսականներ, գիտնականներ ու ինժեներներ, գրողներ ու արվեստի աշխատողներ, որոնք արտահայտեցին հայ ժողովրդի՝ խաղաղությունը ամբողջ ուժով պաշտպանելու բուռն ձգտումը:

— Մենք չենք տարակուսում, որ խաղաղությունը կհաղթի պատերազմին, որովհետև խաղաղության համար մղվող պայքարին մասնակցում է ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը, իսկ այդ պայքարի դրոշի վրա գրված է ՍՏԱԼԻՆ,— իրենց ելույթներում ասացին կոնֆերանսի դելեգատները:

Կոնֆերանսին մեծ խանդավառությամբ ողջունեց Երևանի պիոներների և դպրոցականների դելեգացիան: Դելեգացիայի անունից սրտառուչ ելույթ ունեցավ Շահումյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի Ծովինար Թորգոմյանը:

Ահա թե ինչ ասաց Ծովինար Թորգոմյանը:

— Սիրելի ծնողներ, քույրեր ու եղբայրներ, մեզ կոնֆերանս են ուղարկել ձեր բալիկները, կարմիր փողկապավոր պիոներները:

Մենք դեռ փոքրիկ ենք, ամեն օր դպրոց ենք գնում, շատ գրքեր ենք կարդում, ուրախ խաղում ենք, երգում: Մեր կյանքն այնքան լավ և ուրախ է անցնում, որ կարծես միշտ գարունն է ժպտում մեզ՝ տանը, դպրոցում, փողոցում:

Եվ մենք անսահման, անսահման ու ջերմ շնորհակալություն ենք հայտնում հարազատ հայր, սիրելի ՍՏԱԼԻՆԻՆ, մեր ուրախ ու երջանիկ մանկության համար (ծափահարություններ):

Մեզ քաջ հայտնի է, որ աշխարհում կան շատ երեխաներ, որոնք հնարավորություն չունեն դպրոց գնալու և կարոտ են մի կտոր չոր հացի, որոնց մանկությունն անցնում է տխուր ու տանջալից: Այդ երե-



Երևանի պիոներները ողջունում են կոնֆերանսի դելեգատներին:

խաները մեզ ճայում են Ամերիկայից, Անգլիայից, Ֆրանսիայից, որտեղ իշխում են արյունախում հարուստները: Նրանք ոչ միայն չեն սիրում երեխաներին, այլ այնքան չար են ու դաժան, որ հրամայում են սպանել երեխաներին, կանանց, ծերունիներին:

Մեզ համար ատելի են այդ մարդիկ, որոնք աշխատում են, որ նորից պատերազմ լինի, և արդեն կռվում են Կորեայում, ուր ամեն օր ռումբեր են նետում մանկապարտեզների, դպրոցների, խաղաղ քաղաքների ու գյուղերի վրա: Դրանց ասում են պատերազմի հրձիգներ, որոնց ատում են աշխարհի բոլոր ազնիվ ու բարի կամքի տեր մարդիկ և նամակապես երեխաները: Մենք ատում ենք նրանց և լավ գիտենք, որ պատերազմը բերում է սով, աղքատություն, ավերածություն և որբություն, ու դրա համար ամբողջ հոգով դեմ ենք պատերազմին (ծափահարություններ):

Մենք ևս կողմնակից ենք խաղաղության և խաղաղություն ենք պահանջում ոչ միայն մեզ, այլև աշխարհի բոլոր երեխաների համար:

Մեր ցանկությունն է, որ բոլոր ազնիվ մարդիկ իրենց ստորագրությունները դնեն հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ: Մենք դեռ փոքրիկ ենք և Կոչի տակ ստորագրել չենք կարող, սակայն խնդրում ենք ու պահանջում ձեզանից, մեր ծնողներից, որ բոլորը միահամուռ կերպով ստորագրեն խաղաղության Կոչի տակ (ծափահարություններ):

Ստորագրեցեք հանուն մեր երջանիկ կյանքի, հանուն բոլոր երեխաների:

Մենք հաստատ համոզված ենք, որ խաղաղությունը կհաղթի պատերազմին, որովհետև աշխարհի միլիոնավոր բարի կամքի տեր ազնիվ մարդիկ և նրանց երեխաները խաղաղություն են ուզում:

Խաղաղությունն անպայման կհաղթի, որովհետև մեր հայր, սիրելի ՍՏԱԼԻՆԸ իր պողպատյա ձեռքում բռնած առաջ է տանում խաղաղության դրոշը, որին հետևում են հարյուր միլիոնավոր աշխատավորներ: Նրանք բոլորն իրենց հայացքները ուղղել են Կարմիր Մոսկվային, հարազատ Կրեմլի փիրուզյա աստղերին, ուր աշխատում է խաղաղության կերտող Մեծ ՍՏԱԼԻՆԸ, խաղաղության ուղին լուսավորող մեր կյանքի անմար փարոսը (ծափահարություններ):

Թող բարձր թռչեն խաղաղության աղավնիները և աշխարհով մեկ տարածեն խաղաղության կոչերը: Թող լավ իմանան խաղաղության թշնամիները, որ և՛ Փարիզում, և՛ Շանհայում ամեն, ամեն մի պատանի դեպի երկինք է բաց թողնում այս նույն պահին մի սպիտակ աղավնի:

Թող նորից աշխարհով մեկ հնչի մեր մանուկ ձայնը, որ մենք ի սրտե ոչ թե խնդրում, այլ խաղաղություն ենք պահանջում:

Թող կորչի՛ պատերազմը:

Կեցցե՛ խաղաղությունը:

Կեցցե՛ խաղաղության մեծ դրոշակակիր, հարազատ հայր ՍՏԱԼԻՆԸ (ծափահարություններ):



Կիրովականի կարդի ֆաբրիկայի կոմերիտական բանվորուհի, կոնֆերանսի դելեգատ Սրբուհի Սարդարյանը Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրելիս:

# ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ՀԻԴՐՈՀԱՆԳՈՒՅՑԸ



*Ս. ԻՍԱՀԱԿՅԱՆ*

*Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

*Այս ամառ մեր պիոներական ճամբարը գտնվում էր Երևանի Նորք թաղամասում, այգիների մեջ։ Ճամբարից ոչ հեռու գըտնըվում էր մի շինարարական հրապարակ։ Այնտեղ առավոտից մինչև ուշ երեկո աշխատում էին մարդիկ ու մեքենաներ։*

*Մի օր մենք հետաքրքրվեցինք, թե ի՞նչ կառուցում է տեղավորված մեր ճամբարի կողքին։ Ջոկատավարը՝ ընկեր Արշալույսը բացատրեց, որ այնտեղ կառուցում են Կույբիշևի հիդրոհանգույցի մոդելը։*

*Մենք կարդացել էինք Կույբիշևի հիդրոհանգույցի մասին։ Ճիշտ է, սկզբում լավ չհասկացանք էլ, թե այդ ինչ «մոդել» է, բայց խնդրեցինք ընկեր Արշալույսին, որ մեզ մոտիկից ծանոթացնի այդ կառուցվածքի հետ։ Ընկեր Արշալույսն ինքն էլ էր հետաքրքրվում. և մենք շուտով գնացինք այնտեղ։*

*Գեղատեսիլ բնության գրկում, այգիների մեջ թաղված այդ գողտրիկ անկյունում Հայաստանի գիտնականները հիմնել էին իրենց լաբորատորիան, որտեղ պետք է փորձարկեին Կույբիշևյան հիդրոհանգույցի կառուցվածքները։ Այդ մասին մեզ պատմեց լաբորատորիայի ղեկավար ակադեմիկոս Եղիազարյանը։*

*— Այս կառուցվածքը, որ դուք տեսնում եք,— ասաց նա,— 150 անգամ փոքրացրած Կույբիշևյան հիդրոհանգույցն է։ Հիդրո-տեխնիկական կառուցվածքների նախագծերը լաբորատորիայում ստուգելու համար հաճախ են դիմում այս միջոցին, այսինքն մոդելացնում են կառուցվածքները և ուսումնասիրում։ Մոդելի և կառուցվածքի նմանությունը չխախտելու համար, կառուցվածքը փոքրացվում է մեխանիկայի հատուկ օրենքներով։ Դրանք նմանության օրենքներ են կոչվում։ Դրանց միջոցով հաշվում են, թե իրականում ի՞նչ տեղի կունենա կառուցվածքի աշխատանքի ժամանակ։*

*— Մենք այստեղ ուսումնասիրում ենք Կույբիշևյան հիդրոհանգույցի նավագնաց շլյուզի միջի ալիքային երևույթները,— ասաց ակադեմիկոսը։— Ինչպես տեսնում եք այս պատվարի կառուցմամբ Վոլգա գետի վրա առաջանում է մի մեծ տարբերություն ջրի երկու կողմի մակարդակների միջև։ Ջրի հորիզոնը պատվարից տասնյակ մետր ավելի բարձր է, քան թե պատվարից հետո գետում նրա ունեցած մակարդակը։ Որպեսզի Վոլգայով շարժվող նավերն այդ աստիճանով հանգիստ կարողանան անցնել, պետք է այս նավագնաց շլյուզն աշխատի հանգիստ, առանց մեծ ալիքների առաջացման։*

*Մեր ուսումնասիրությունները ցույց տըվին, որ նախագծած շլյուզի աշխատանքն անբավարար է։ Այդ մասին հայտնեցինք Մոսկվա։ Մեր եզրակացության հիման վրա, կառուցվածքի չափերն արդեն փոխված են։ Այժմ պետք է փորձարկենք շլյուզի նոր նախագծով կառուցված մոդելը։*

*— Իսկ ինչպե՞ս եք փորձարկում մոդելը,— հարցրեց մի պիոներ։*

*Ընկեր Եղիազարյանը պատասխանեց.*

*— Այսպիսի մեծության մոդել դեռ չի եղել։ Նա ունի 100 մետր երկարություն և 30 մետր լայնություն։ Այդ մոդելը լաբորատորիայում չի տեղավորվի, դրա համար էլ կառուցված է բաց հրապարակում։ Մոդելի չափերի մեծությունը դժվարացնում է նաև նրա փորձարկումը։ Մենք ստիպված եղանք ավտոմատ դարձնել ալիքների չափումը։ Ավտոմատ կերպով է կանոնավոր-*



վում նաև շլյուզի աշխատանքը։ Այս աշխատանքում առաջավոր էին հատկապես կոմերիտականները։ Նրանք իրենց եռանդը չեն խնայում ժամանակին պարտիայի ու կառավարության այս պատվավոր առաջադրանքը կատարելու համար։

— Իսկ ինչպե՞ս կլինի Վոլգան այս կառուցումներն ավարտելուց հետո,—հարցրեց մեր ընկերներից մեկը։

— Այս ամբարտակների կառուցումներից հետո Վոլգայի նավագնացությունը շատ կշահի։ Վոլգայով կկարողանան տեղափոխել 40 անգամ ավելի բեռ, քան մի երկաթուղագծով։ Բայց սա դեռ քիչ է։ Այս հանգույցում պետք է աշխատի հիդրոէլեկտրակայան, որի հզորությունը երկու միլիոն կիլովատ է, իսկ տարեկան էներգիայի արտադրությունը՝ տաս միլիարդ կիլովատ-ժամ։ Սրանից վեց միլիարդը հաղորդվելու է 800 կիլոմետր հեռու՝ Մոսկվա։ Աշխարհում ոչ մի տեղ, այսպիսի հեռավորության վրա էլեկտրաէներգիա դեռ չեն հաղորդել։ Ամերիկայում ամենահեռու հաղորդման գծի երկարությունն ընդամենը 430 կիլոմետր է։ Բացի այդ, Կույբիշևի ամբարտակի միջոցով պետք է ոռոգվեն՝ Կույբիշևի, Սարատովի, Պենզայի, Չկալովի մարզերի մոտ մեկ միլիոն հեկտար հողերը, որոնք մինչև այժմ անջրդի են։ Նույնպիսի մեծ հանգույց է լինելու Ստալինգրադյանը։ Այս երկու հանգույցի կառուցման համար նախատեսված է 1500 բանվորական օր։ 20 տարի առաջ այդպիսի ժամկետում է կառուցված Դնեպրոգէսը, որը մի քանի անգամ ավելի փոքր է։ Ամերիկայի Կոլորադո գետի վրա արդեն 40 տարի է, որ կառուցվում է Բոուլդեր-դամ հանգույցը։ Նա մոտավորապես մեր նոր կառուցումների չափ է, բայց դեռ չի ավարտված։ Տեննեսի գետի վրա 35 տարի կառուցվում է մի ուրիշ հիդրոհանգույց։

Սովետական Միության մեջ այս կառուցումները պետք է ավարտվեն 5 տարվա ընթացքում և կավարտվեն։ Այդ կառուցումներին մասնակցում է սովետական ամբողջ ժողովուրդը։

Վերջում ընկեր Եղիազարյանն ավելացրեց.

— Սրանք կոմունիզմի մեծ կառուցումների սկիզբն են։ Ավելի շատ ու մեծ կառուցումներ են նախագծվում հաջորդ հնգամյակների համար։ Հարկավոր է լավ սովորել, լավ տիրապետել գիտելիքներին, որպեսզի կարողանաք մասնակցել այդ կառուցումների մեծ գործին։



Կոմերիտական Վ. Գ. Մյաչևը իր հզոր էքսկավատորով աշխատում է Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի շինարարության վրա։

# Քեռի Ասատուրը

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

1.

Իմ մորեղբայր Ասատուրը
Ամբողջ օրը աշխատում է:
Առավոտյան ծեգը-ծեգին,
Սղոցը կամ բահը ձեռքին,
Պտտվում է նա գլխահակ,
Ու մեղմ երգում, բեղերի տակ:
Այստեղ՝ փորում, այնտեղ՝ էտում,
Կտրում, նետում ու պատվաստում:
Անեցնում է մրգեր համեղ՝
Տանձ ու խնձոր, դամբուլ ու դեղձ,
Տեսակ-տեսակ ծիրան, սալոր,
Անուշահամ ու մեղրածոր:



2.

Մի օր ելա ու գնացի
Ծառաստանը քեռուս այգի:
Հասած, անափ արտերի մեջ,
Հագած զմրուխտ շորերը պերճ,
Տարածվել էր այգին հեռվում՝
Կանաչ կղզի՝ ոսկե ծովում:
Հեռվից-հեռու տեսա քեռուս.
Թաշկինակը կապած գլխին,
Մի ծառի տակ հենված բահին,
Ծխացնում էր չիբուխը հին:
—Նստիր,— ասաց,— հիմա կգամ,
Ջուրը մի այս կողմը շուռ տամ:
Բահը դրեց ուսին, հետո
Կանաչ ու նեղ արահետով,
Ջահելի պես թեթև-թեթև,
Ջուրը բռնած՝ գնաց ներքև:
Երբ քիչ անցած, գործն ավարտած,
Մոտենում էր բահը ձեռին,
Ասի նրան՝— Ախր, քեռի՛,
Ծերացել ես, հանգստացիր,
Ի՞նչ ես այդքան դատում-բանում:
— Մարդը, որդիս, միտդ պահիր,
Գործի մեջ է հանգստանում:

3.

Մի օր քեռիս, աշխատելիս,
Կանչեց մոտը իր թոռներին՝
Դավթին, Սեթին ու Խորենին,
Փոքրիկ բահեր տվեց մի-մի
Եվ ուղարկեց աշխատանքի,
Որ ծառերի շուրջը փորեն,
Ծիրանների բուկը բանան,
Որ ջրելիս ծառերն ամեն
Զուլալ ջրով լավ լիանան:
Առած փոքրիկ փայլուն բահեր
Երեք ուրախ երեխաներ,
Իրար խառնած ծիծաղ ու վեճ,

Կորան այգու ծառերի մեջ:
Հենց որ այգու խորքը հասան,
Դավիթը մեր կանգնեց, ասաց.
— Այստեղ հարմար է ու խաղաղ,
Եկեք առաջ մի քիչ խաղանք,
Հետո,— ասաց,— կանցնենք գործի:
— Իսկ ի՞նչ խաղանք:
— Պահմըտոցի:
Եվ բահերը դրած մի կողմ,
Ուրախ ճիչով ու աղմուկով,
Մոռացած գործ, պատվեր ու բահ,
Ինքնամոռաց խաղով ընկան:
Մագլցում են ծառերն ի վեր,
Թփերի մեջ են թաքնվում,
Եվ լսվում է վերից, վարից.
— Առ՜ւ... առ՜ւ... Թե գտար ինձ...

4.

Թե որտեղից, հենց այդ ժամին,
Պապը կանգնեց նրանց գլխին:
Ասաց՝— Դավի՛թ, ի՞նչ ես անում:
— Ե՞ս... ես, պապի, բան չեմ անում:
— Այդպե՜ս, այդպե՜ս...
Ա՛յ, շատ ապրես:
Պապը դարձավ մյուսներին՝
Փոքրիկ Սեթին ու Խորենին.
— Եկեք, տեսնեմ, դուք իմ քաջեր,
Ի՞նչ եք արել, ի՞նչ եք թողել,
— Օգնում էի, պապի, նրան,—
Ասաց Սեթը վրա-վրա:
Իսկ Խորենը, որ Սեթի պես,
Լավ չէր լսել,
Թե Դավիթը ինչ էր ասել,
Կանչեց հեռվից՝— Ես էլ, ես էլ...
— Ա՛յ, շատ ապրե՜ք,
Իմ քաջ բալեք...
Պապի առաջ լուռ ու շվար,
Կանգնել էին ամոթահար
Սեթը, Դավիթն ու Խորենը:
Եվ թվում էր, որտեղ որ է,
Հենց այս ժամին
Կհեկեկան միանգամից:
Այս որ տեսավ, պապիկն ասավ.
— Մարդն աշխարհ է եկել, բալեք,
Որ երկիրը շենացընի,
Որ աշխատի լավ ու սիրով,
Կյանքը լցնի բերք ու բարով:
Դավիթն հանկարծ լուռ հեկեկաց.
— Պապի՛, պապի՛, իմ լավ պապի,
Էլ այդպիսի բան չեմ անի:
— Ես էլ, ես էլ,— իսկույն ասին,
Սեթն ու Խորենը միասին.
— Էլ այդպիսի բան չենք անի:
Ասին, բահերն առան շուտով,
Ուրախ ճիչով ու աղմուկով,
Եվ շտապով գործի կպան:
Պապը նրանց նայեց մի պահ,
Ուզեց մի բան ասել, ապա
Լուռ ժպտալով բեղի տակին,
Հանգիստ գնաց իրա բանին:

Իմ մորեղբայր Ասատուրը
Ամբողջ օրը աշխատում է:



# ՊԱՏՄՎԱԾՔ ԽԻԶԱԽ ՀԵԾՅԱԼԻ ՄԱՍԻՆ

ԲՈՐԻՍ ԷՄԵԼՅԱՆՈՎ

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ



*Մանուկների սիրելի գրող Արկադի Պետրովիչ Գայդարը (Գոլիկովը) ծնվել է 1904 թվին Կուրսկի նահանգի Լգով քաղաքում։ Նրա հայրը ուսուցիչ էր։ Արկադիի ծնվելուց հետո նրանց ընտանիքը տեղափոխվել է Արզամաս, որտեղ մեծացել և ուսում է առել նա։*

*Գայդարն ակտիվ կերպով մասնակցել է Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիային և քաղաքացիական կռիվներին։ Նա զենքը ձեռքին, Կարմիր Բանակի շարքերում պաշտպանել է Սովետական Հայրենիքը։ Գայդարի առաջին ստեղծագործությունը տպագրվել է 1925 թվին Լենինգրադում։ Դա «Պարտությունների և հաղթանակների օրերին» վիպակն էր։ Հետագայում նա գրել է «Դպրոցը», «Ռազմական գաղտնիք» և այլ հետաքրքիր գործեր։ Այդ գրվածքները ընթերցողների մեջ դաստիարակում են արիություն, սեր ու նվիրվածություն մեր մեծ Հայրենիքի, Լենինի—Ստալինի պարտիայի նկատմամբ։*

*Տաս տարի առաջ, 1941 թվի հոկտեմբերի 26-ին, գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարում Արկադի Գայդարն ընկավ հերոսի մահով։ Տպագրում ենք մի պատմվածք Գայդարի մասին։*

Արկադի Գայդարը գրեց «Ռազմական գաղտնիքը» և ինչպես միշտ, վերջացնելով նոր գիրքը, Մոսկվայից մեկնեց։ 1934 թվի նոյեմբերին Դոնի Ռոստովում նա վիպակը կարդաց գրադարանավարների ու երեխաների մոտ։ Գիրքը մեծ էր ստացվել. միանգամից, մի երեկոյի ընթացքում կարդալն անհնարին էր։ Գայդարը կարդում էր ձեռագիրը (գիրքը դեռ լույս չէր տեսել). հատվածաբար կարդում էր դպրոցներում, Ստալինի անվան գրադարանում, Ռոստովի գյուղատնտեսական մեքենաների գործարանի կուլտուրայի պալատում, Վելիչկինայի անվան գրադարանում։ Երեխաներից ոմանք լսում էին միայն վիպակի սկիզբը, ոմանք՝ միջին մասը, իսկ մյուսները՝ վերջը։

Ռոստովից մեկնելուց առաջ, Պիոներների պալատում Գայդարը պատահաբար մասնակցեց մի դիսպուտի։ Վիճում էին տղաները ու աղջիկները։ Եվ որովհետև նրանք վիպակն ամբողջությամբ չէին կարդացել, նրանց վեճը իզուր և անիմաստ էր։

— Ո՞վ է գլխավորը,— Գայդարին տեսնելով գոչեցին նրանք։— Ջոկատավար Նատկա՞ն, Վլադիկ Դաշևսկի՞ն, ինժեներ Սերգե՞յը, փոքրիկ Ալկա՞ն, կամ գուցե հոկտեմբերիկ Կարա՞սիկովը։

— Օդաչուները թռչում են կապույտ երկնքում, շոգենավերը լողում են կանաչ ծովում,— պատասխանեց Գայդարը.— ամեն մի մարդ ունի իր ճանապարհը, իսկ թե ով է հերոսներից գլխավորը, ես ինքս էլ չգիտեմ։

Ստալինի անվան գրադարանի փոքրիկ ընթերցողները, հենց նրանք, որոնք լսել էին վիպակի վերջավորությունը, բոլորը միասին, միանգամից գոչեցին.

— Ալկա՛ն, գլխավորը Ալկա՛ն է։

— Ո՛չ,— գոչեցին «Սելմաշ» գործարանի պիոներները, որոնք լսել էին սկիզբը։— Գլխավորը Նատկան է, Շեգալովան, Նատկան։

Այդպես նրանք վիճում էին երկու, թե երեք րոպե, մինչև որ օղակավար Վիտյա Զարայսկին թռավ աթոռի վրա, որպեսզի ամենից բարձրն ու ամենից նկատելին երևա, բարձրացրեց ձեռքը և խոսք խնդրեց։

— Նատկան շատ լավն է, Վլադիկն էլ է լավը,— ասաց նա։— Բայց ահա գիրքը ավարտվեց ու նրանք բոլորը ողջ և առողջ մնացին, իսկ ահա Ալկան մենակ բոլորի համար մեռավ։

Աղջիկները բաց ու խուփ էին անում աչքերը, իսկ «Սելմաշի» ամենից աղմկարար տղաները լռում էին։ Աղջիկներից մեկը, փոքրիկ Վալյա Կոլեսնիչենկոն, հենց նա, որ բոլորից բարձր էր գոռում, թե աշխարհում Նատկա Շեգալովայից ավելի գլխավորը չկա, առաջ եկավ։

— Ես չգիտեի, թե Ալկան մեռավ...— ասաց նա հանդարտ, կրծքի վրա ուղղելով պիոներական վզկապը։— Այդ ինչպե՞ս, Արկադի Պետրովիչ։ Ինչո՞ւ նա մեռավ։

— Նրան սպանեցին թշնամիները,— գոչեց Վիտյա Զարայսկին։

— Իսկ ես չգիտեի,— ասաց Վալյան։— Ես այդ չէի լսել։ Մենք դրա մասին չենք վիճում, այդպես չի՛ կարելի։

Նրանք իսկապես դրա մասին չէին վիճում։ Այո, գրքի բոլոր լավ մարդիկ մնում էին ողջ և առողջ։ Միայն ամենալավագույնը, ամենախիզախ փոքրիկը, վեցամյա տղա Ալկան, «Համաշխարհային ռևոլյու-



ցիայի անվան հոկտեմբերիկների առաջին ջոկատի հեծյալը», վիպակի վերջին էջերում ընդմիշտ փակում էր աչքերը:

Ուրախ գիրքը խիստ և թախծոտ դարձավ:

— Այդպես չի՛ կարելի,— կրկնեց Վալյան:

Եվ Գայդարը հասկացավ, որ այդպես հեռանալն իսկապես անկարելի է: Երեխաների համար հեշտ չէր սպասել, թե գիրքը երբ լույս կտեսնի: Նա ձեռագիրը դրեց սեղանի վրա:

— Գիրքն առայժմ մնա ձեզ մոտ,— ասաց նա:— Կարդացեք, մեկդ մյուսի համար: Հետո կխոսենք. կարելի է, թե՞ ոչ: Իսկ գրքի գլխավոր հերոսները իմ կարծիքով Կարմիր Բանակը և Սովետական իշխանությունն են:

1935 թվի սկզբին Գայդարը Մոսկվայից աշխատանքի մեկնեց Արզամաս, այն քաղաքը, որտեղ մի ժամանակ նա մեծացել և սովորել էր: Այնտեղ նա ստացավ Ռոստովի պիոներների նամակները: Միտյա Բելիխը, Վիտյա Զարայսկին, Վալյա Կոլեսնիչենկոն և նրանց 22 ընկերները Գայդարին գրում էին: Նրանք մեկը մյուսի մոտ բարձրաձայն կարդացել էին նրա ձեռագիրը սկզբից մինչև վերջ: 1935 թվականի մարտի 5-ին Արկադի Գայդարը պատասխան գրեց նրանց.

«Թանկագին երեխաներ. Մոսկվայից ինձ ուղարկեցին ձեր նամակներն ու կարծիքները իմ «Ռազմական գաղտնիք» վիպակի մասին: Իհարկե, ես շատ եմ ուրախացել: Վիպակն առանձին գրքով լույս կտեսնի երկու շաբաթ հետո: Ես արդեն կարգադրել եմ, որ իսկույն մի քանի գիրք ուղարկեն Ռոստով. Ստալինի անվան, Վելիչկինայի անվան և «Սելմաշի» գրադարաններին: Կարդացեք, քննարկեցեք և այն ժամանակ նորից գրեցեք: Մի բան է, երբ այդպիսի ոչ փոքր վիպակը ձեզ մոտ մաս-մաս բարձրաձայն կարդային և բոլորովին ուրիշ է, երբ ամեն մեկն ինքն է կարդում: Ես պատասխանում եմ ձեր գլխավոր հարցին. ինչո՞ւ վիպակի վերջում Ալկան զոհվեց. ավելի լավ չէ՞ր լինի արդյոք, որ նա կենդանի մնար: Իհարկե, ավելի լավ կլիներ, որ Ալկան ապրեր: Իհարկե, ավելի լավ կլիներ, որ Չապաևն էլ ապրեր: Իհարկե, անչափ լավ կլիներ, եթե ողջ և առողջ մնային հազարավոր և տասնյակ հազարավոր մեծ, փոքր, հայտնի և անհայտ հերոսներ: Բայց կյանքում այդպիսի բան չի լինում: Ամեն ինչ այդքան հեշտ, հանգիստ և հասարակ ձևով չի կատարվում...

Դուք խղճում եք Ալկային. Վալյա Կոլեսնիչենկոն իր կարծիքի մեջ գրում է ինձ, որ իր համար նույնիսկ «շատ ցավալի է»: Դե, ես ձեզ անկեղծորեն կասեմ, որ երբ գրում էի, այնպես էի ցավում, որ երբեմն ձեռքս հրաժարվում էր վերջին գլուխները գրել: Բայց այնուամենայնիվ լավ է, որ ցավալի է: Այդ նշանակում է, որ դուք ինձ հետ միասին, իսկ ես ձեզ հետ միասին պետք է ավելի ջերմորեն սիրենք և՛ Սովետական երկիրը, որտեղ ապրում էր Ալկան, և՛ արտասահմանյան ընկերներին, որոնք քշված են տաժանակիր աշխատանքի ու նետված են բանտերը: Պետք է է՛լ ավելի ատենք և՛ մեր տնային, և՛ օտար, արտասահմանյան բոլոր թշնամիներին, բոլոր նրանց, որոնք փորձում են փակել մեր ուղին և որոնց դեմ մղվող պայքարում ընկնում են մեր լավագույն, մեծ և հաճախ փոքրիկ ընկերները: Ահա ձեր առաջին հարցի պատասխանը: Ջերմ ողջույն բոլորին՝ Միտյա Բելիխին, Վիտյա Զարայսկուն, Ալեքսեյ Պոդսկորինին, Ռիխտերին, Վալյային և ընդհանրապես բոլորին, որոնց ուսերի վրա խելացի գլուխ կա:

Ես ողջ եմ, առողջ, այժմ ապրում եմ Արզամաս քաղաքում և աշխատում, դեռ մի քանի ամիս էլ այստեղ կլինեմ: Դուք էլ ողջ և առողջ եղեք:

Ձեր՝ ԱՐԿԱԴԻ ԳԱՅԴԱՐ»:

Այն ժամանակվանից շատ տարիներ են անցել:

Մի անգամ ես եղա Ռոստովում: Կոմերիտմիության մարզկոմում մեր ընկերներով զրուցում էինք և հիշում Ռոստովի պիոներներին ու «Ռազմական գաղտնիքը»:

— Հետաքրքիր է,— ասացի ես,— որտե՞ղ են այժմ այդ բոլոր փոքրիկ տղաներն ու աղջիկները: Հիշո՞ւմ են արդյոք նրանք Գայդարին:

— Ես հիշում եմ,— ասաց իմ զրուցակիցներից մեկը:— Ես Միտյա Բելիխն եմ և աշխատում եմ մարզկոմում, որպես հրահանգիչ:

— Ի՜նչ մեծացել եք,— ասացի ես զարմանքով:— Ինչպես է անցնում ժամանակը, իսկ որտե՞ղ են քո հասակակիցները՝ Վիտյան, Ալեքսեյը, Վալյան:

Միտյան շրջվեց դեպի պատը:

— Վիտյան մեծացել էր դեռ մինչև պատերազմը,— ասաց նա:— Նա ընկավ մարտում համարյա Գայդարի կողքին...

Բոլորը լռեցին: Ես էլ այդ օրը վախեցա հարցնել, թե ո՞վ է էլի «մինչև պատերազմը մեծացել», ով-

քե՞ր են մնացել ողջ և առողջ այն երեխաներից, որոնք 1935 թվի ձմռանը տխրում և վշտանում էին Ալկայի փառավոր մահվան համար. իսկ երկու օր հետո ինձ ասացին, որ Ալկան... կենդանի է:

— Դա ինչպե՞ս կարող է լինել,— ասացի ես անվստահորեն:— Ալկան գրքի հերոս է: Նա ապրել և մեռել է «Ռազմական գաղտնիքի» էջերում:

— Դե, այդ դեռ հարց է,— ասացին իմ զրուցակիցները և թևանցուկ արին ինձ:

Լայն փողոցով նրանք ինձ տարան դեպի Դոն, ասացին. «Սպասեցեք, նա այս ժամին միշտ դուրս է գալիս որդու հետ զբոսնելու» և ճիշտ որ, ես տեսա, թե ինչպես, մի երիտասարդ կին դանդաղ իջնում է դեպի գետը:

— Նրան կոչում են Վալյա,— ասացին ինձ,— Վալենտինա Ստեպանովնա Կոլեսնիչենկո, իսկ նրա կողքին վազում է որդին, աշխույժ, վեցամյա Ալկան. մի փոքրիկ տղա՝ թուխ և ժպտուն աչքերով, ինչպես գրքույկում:

Վալյան այն ժամանակ, 14 տարի առաջ փոքրիկ էր, սպիտակ դեմքով, փոքրիկ հյուսերով: Նրա վզկապն էլ միշտ մի կողմ էր ծռվում: Արդեն վաղուց էին համալրված «Համաշխարհային ռևոլյուցիայի անվան առաջին ջոկատի» շարքերը, որի մասին գրել էր Գայդարը:

— Հասկանալի է,—ասացի ես և կանգ առա ծառի տակ:

Եվ ահա կանգնած նայում եմ: Մայրն ու որդին մոտենում են գետին: Վալյան նստում է նստարանին. Ալկան զինվոր է խաղում, քար է հավաքում և ափին քարե սպառնալի ամրոց կառուցում: Վալյան վեր է կենում և մոտենում ջրին: Ի՞նչ է հիշում նա: Գուցե երկինքն այսօր այնպես պայծառ և կապույտ է, ինչպես մանկության ժամանա՞կ: Գուցե, Ալկայի աչքերն էլ այնպիսի՞ն են:

Հանկարծ Վալյան ամուր-ամուր գրկում է Ալկային, և «Համաշխարհային ռևոլյուցիայի անվան ջոկատի» զարմացած հեծյալը բարձրացնում է փոքրիկ գլուխը, աչալուրջ նայում երկնքին: Ամեն ի՞նչ է արդյոք երկնքում հանգիստ: Նա անսպասելիորեն հարցնում է.

— Մայրիկ, ինչո՞ւ ես դու լաց լինում:

Այն ժամանակ մայրն սկսում է պատմել որդուն բոլորը, ինչ գրված է այս պատմվածքում և մեկ էլ այն մասին, թե ինչպես Հայրենիքի համար ընկավ հիանալի գրող և մարդ Արկադի Գայդարը: Այդ ժամանակ խիզախ հեծյալը բռունցքով սրբում է արցունքները:

— Գայդարն ինչո՞ւ սպանվեց,— հարցնում է նա:— Ես չեմ ուզում:

Հանգիստ և թերևս նույնիսկ խիստ նայելով դեպի կապո՜ւյտ-կապո՜ւյտ երկինքը Վալյան ասում է որդուն.

— Լաց մի՛ լինի: Ես նույնպես լաց չեմ լինի: Իհարկե, ավելի լավ կլիներ, որ Արկադի Պետրովիչը կենդանի մնար... Իհարկե, անչափ լավ կլիներ, եթե ապրեին բոլոր մեր սովետական մարդիկ, որոնք պաշտպանում էին մեր Հայրենիքը, նրա դժվարին ժամին: Բայց կռվում այդպես չի լինում: Պատերազմ եղավ և նրանք մեռան, որպեսզի այլևս պատերազմ չլինի:

Ալկան արագորեն ավարտում է իր քարե ամրոցի կառուցումը: Կասկաներին կարմիր աստղեր ամրացրած զինվորները կանգնած են պատերի վրա: Փորձիր խցկվել: Վալյան ժպտալով նայում է որդուն:

— Քեզ ոչ ոք չի հանդգնի ձեռք տալ, փոքրիկ,— ասում է նա:— Մենք իզուր չէր, որ հաղթեցինք, մենք շատ ենք:

— Մենք ո՞վքեր ենք,— հարցնում է Ալկան:— Մայրիկ, ես և դու ովքե՞ր ենք:

— Մենք հասարակ մարդիկ ենք,— պատասխանում է Վալյան,— Ստալինի երեխաները, եղբայրները և քույրերը: Մենք պատերազմ չենք ուզում:

Ալկան հանգստացած վերցնում է գիրքը: Ահա նա, նստած է մոր կողքին, Դոնի ափին: Առափնյա թղկիները կարծես ավելի բարձր են դարձել և գետի հանդարտ հոսանքը՝ ավելի հանգիստ: Ալկան կարդում է: Նրա ծնկների վրա է Չուկի և Գեկի մասին գրած գիրքը:

*Թարգմ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*

---

**Ավագ ջոկատավարի գրույցը**

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԴՐՈՒԺԻՆԱՅԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

*Մեծ պատիվ է լինել պիոներական դրուժինայի խորհրդի անդամ, վայելել ընկերների վստահությունը, ակտիվորեն մասնակցել կազմակերպության աշխատանքներին, պայքարել հարազատ դպրոցի, դրուժինայի և ջոկատի պատվի համար։ Եթե ընկերներդ քեզ վստահել ու ընտրել են, ապա աշխատիր արդարացնել նրանց վստահությունը, գործով ցույց տուր, որ դու Վ. Ի. Լենինի անունը կրող կազմակերպության արժանավոր անդամն ես։*

*Դրուժինայի խորհուրդը դպրոցի պիոներական կազմակերպության ղեկավարն է։ Նրա հիմնական խնդիրն է՝ բոլոր պիոներների ակտիվությունն ուղղել դեպի գիտելիքների տիրապետումը և գիտակցական կարգապահության բարձրացումը։*

*Դրուժինայի խորհուրդը դպրոցի կոմե-*



Երևանի Շահումյան դպրոցի Լյուբա Շևցովայի անվան ջոկատի պիոներներ՝ Դոնարա Ղազարյանը, Արփիկ Մուրադյանը և Սուսաննա Իսրայելյանը աշխատում են ալբոմ-հուշատետրի վրա:

Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

րիտական կազմակերպության և ավագ ջոկատավարի ղեկավարությամբ պետք է հրավիրի պիոներական ակտիվի սեմինար պարապմունքներ, նրանց սովորեցնի աշխատանքի ձևերն ու մեթոդները։

Խորհուրդը ուսուցիչների օգնությամբ և ղեկավարությամբ ջոկատներում պետք է կազմակերպի թեմատիկ հավաքույթներ։ Այդ հավաքույթներն ավելի կխորացնեն դպրոցում ձեռք բերված գիտելիքները։ Անհրաժեշտ է ուսուցիչների խորհրդով կազմակերպել էքսկուրսիաներ դեպի գործարանները, թանգարանները և այլ նշանավոր վայրեր։ Պետք է հատուկ աշխատանք տանել, որ պիոներներն անհատորեն, օղակում և ջոկատում շատ գրքեր կարդան, պատմեն նրանց բովանդակությունը։ Կարելի է հավաքույթներում զրույցներ լսել «Իմ սիրած գիրքը», «Իմ սիրած հերոսը» թեմաներով։

Խորհուրդը պետք է հետևի, որ բոլոր պիոներները ժամանակին և լրիվ կատարեն ուսուցիչների հանձնարարությունները, պայքարեն ուսման բարձր որակի համար, օգնեն ետ մնացող ընկերներին։

Ջոկատներում և օղակներում անհրաժեշտ է հաճախակի զրույցներ լսել Սովետական Հայրենիքի, մեծ առաջնորդներ՝ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի հիասքանչ կյանքի և ռևոլյուցիոն գործունեության մասին, որոնց օրինակին պետք է հետևեն բոլոր պիոներները ուսման մեջ և ամբողջ կյանքում։ Մեծահասակ պիոներների ջոկատներում անհրաժեշտ է կազմակերպել զրույցներ՝ բոլշևիկյան պարտիայի, կոմերիտմիության անցած փառապանծ ուղու, կոմունիզմի մեծ կառուցումների, խաղաղության պահպանման և այլ թեմաների շուրջը։

Դրուժինայի խորհուրդը պարտավոր է հոգ տանել և պատրաստել ու երաշխավորել 14 տարին լրացած պիոներներին անցնելու կոմերիտմիության շարքերը։

Անհրաժեշտ է հաճախակի հանդիպումներ կազմակերպել գիտության, կուլտուրայի, արվեստի աշխատողների և նշանավոր մարդկանց հետ, որոնք շատ հետաքրքիր նորություններ կպատմեն պիոներներին։

Դպրոցում կարելի է կազմակերպել ֆիզկուլտուրայի տոն, ցուցադրել այդ բնագավառում ձեռք բերած հաջողությունները, պարզել ովքեր են թռիչքի, վազքի, նռնականետման, շախմատի չեմպիոնները։ Այնպես պետք է անել, որ բոլորն զբաղվեն մարմնամարզությամբ և հանձնեն «ԵՊԱՊԻ» կրծքանշանի նորմաները։ Փոքրերի ջոկատներում կարելի է կազմակերպել խաղերի ուսուցում, զբաղվել նրանց ֆիզիկական դաստիարակության հարցերով։ Տարվա ընթացքում դրուժինան կարող է անցկացնել երգի տոն, լավագույն ընթերցանության, նկարների, ինքնաշեն գործիքների, մոդելների կոնկուրս։

Առաջիկա հավաքներից մեկը պետք է

նիրվի խաղաղությանը՝ «Ստալինը խաղաղության մեծ դրոշակակիր» թեմայով։ Խորհուրդը պետք է հաշվի առնի ամեն մի պիոների ցանկությունը և ընդգրկի համապատասխան արտադպրոցական խմբակներում։ Օղակներն ու ջոկատները կոլեկտիվ կերպով կարող են դիտել կինոնկարներ, ներկայացումներ և քննարկել նրանց բովանդակությունը։

Անհրաժեշտ է պատրաստել և պիոներական կազմակերպության մեջ ընդունել բոլոր 3-րդ դասարանցիներին, որոնք անհամբեր սպասում են այն երջանիկ օրվան, երբ կարմիր վզկապ կկրեն։

Պիոներ ակտիվիստը միշտ պետք է հիշի, որ մեր մեծ Հայրենիքը ընկեր Ստալինի ղեկավարությամբ հաղթականորեն կառուցում է կոմունիզմի մեծ շենքը։ Սովետական ժողովուրդները պայքարում են հանուն խաղաղության, հանուն մեր երեխաների երջանիկ ներկայի և էլ ավելի փայլուն ապագայի։ Բոլշևիկների պարտիան, Սովետական կառավարությունը և անձամբ հարազատ հայր, սիրելի Ստալինը երեխաների համար ստեղծել են ուսման և հանգստի լավագույն պայմաններ։

Ամեն մի պիոներ պետք է սովորի և աշխատի այնպես, որ կարողանա դառնալ մեր մեծ Հայրենիքի ազնիվ, խիզախ ու համարձակ քաղաքացին։ Պետք է աշխատել և սովորել այնպես, որ հարազատ հայր Ստալինը պիոներներից գոհ լինի։

Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ

———— o ————




Նկ. Հ. ՔԱՑԱԿՅԱՆԻ

Ցուցահանդեսի բացմանը մի օր էր մնացել, բայց Լևիկը դեռ չէր ավարտել իր աշխատանքը։ Ասենք, արդեն ավարտել էր, բայց ի՞նչ արժի այդպես ավարտելը։ Ռադիոընդունիչն էլ նրա համար է, որ խոսի, իսկ եթե չի խոսում, էլ ի՞նչ ընդունիչ։

Լևիկն անհամբերությամբ նորից ու նորից ամրացնում էր պտուտակները, ստուգում լարերը և համեմատում սեղանի վրա փռված գծագրի հետ։ Ամեն ինչ կարծես իր տեղում էր. բայց ընդունիչը լուռ էր։ Ի՞նչ անի, ո՞ւմ հարցնի։ Հայրն էլ քաղաքում չի, որ նրանից իմանա. իսկ ընկեր Արմենը հիմա զբաղված է ցուցահանդեսով։ Հո չի՞ կարող նրան զբաղեցնել։

Հանկարծ Լևիկի գլխում մի միտք ծագեց. իսկ եթե սխալը գծագրի մեջ է։ Չէ՞ որ գծագիրն ինքն է կազմել։

Նա անմիջապես մոտեցավ գրքերի պահարանին և հանեց «Դետեկտորային ռադիոընդունիչներ» գիրքը։ Դե իհարկե, սխալը գծագրում է. Լևիկն ավելացրեց անհրաժեշտ դետալը և ընդունիչն սկսեց գործել։

Այսպես, դժվար պահին Լևիկին օգնության հասավ գիրքը։ Բայց միայն Լևիկին չէ, որ գիրքն օգնեց։ Գիրքը շատերին է դըժվար վիճակից հանել ու ուղիղ ճանապարհ ցույց տվել։ Գիրքը մեր լավ բարեկամն է և ուսուցիչը։ Մենք ամեն անգամ դիմում ենք նրա օգնությանը, երբ ուզում ենք մի բան պարզել, սովորել։ Գեղարվեստական գրքի ընթերցանությունը օգնում է մեզ դառնալ բազմակողմանի զարգացած մարդ։

Մոսկվայում Նիկոլայ Օստրովսկու թանգարանում պահպանվում են «Ինչպես էր կոփվում պողպատը» գրքի օրինակները, որոնք ծածկված են գնդակներով ու բեկորներով, ներկված են հայրենիքի պաշտպանների արյունով։ Սովետական երիտասարդ-

ները ծանր մարտերի ժամանակ էլ չէին բաժանվում այդ գրքից, որը նրանց սովորեցնում էր արիություն ու անձնվիրություն, նվիրվածություն սոցիալիստական հայրենիքին:

Գիրքն ամեն մարդու օգնում է սովորել, բայց երեխաները ավելի շատ բան ունեն սովորելու գրքերից: Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան ասում էր. «Աճող սերնդին գիրքը պետք է նույնքան, որքան և դպրոցը»:

Երեխաներն ընթերցելով սովորում են ինքնուրույն կերպով օգտվել գրքից, կողմնորոշվել և գտնել իրենց հետաքրքրող հարցերի պատասխանը: Մտերմացեք գրքերի՝ ձեր լավ բարեկամների հետ: Նրանք ձեզ շատ կօգնեն գիտությունների բարձունքները տիրապետելու գործում:

## ՈՒՍՈՒՑՉԻ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Ռուսաց լեզվի գրավորից ես ինձ թույլ էի զգում: Հինգերորդ դասարանում հաճախ «2» էի ստանում և վեցերորդ դասարան փոխադրվեցի երեքով: Հետո ես սկսեցի մի փոքր ավելի լավ գրել, բայց էլի սխալներ էի անում: Առաջին, երկրորդ և երրորդ քառորդներին ես «երեքից» բարձր գնահատական չստացա: Չորրորդ քառորդում սխալներս պակասեցին. ես չորս ստացա, որովհետև գեղարվեստական գրքեր ավելի շատ սկսեցի կարդալ:

Մյասնիկյանի անվան Պետական հանրային գրադարանի մանկական սրահն իմ ամենասիրելի վայրը դարձավ: Հիմա էլ ես այնտեղ եմ անցկացնում իմ ազատ ժամանակը: Բայց առաջ ես շատ անուշադիր էի կարդում. հափշտակվում էի միայն գրքի բովանդակությամբ և ուշադրություն չէի դարձնում լեզվի վրա: Հետո հասկացա և սկսեցի ավելի ուշադիր կարդալ, հետևել հեղինակի լեզվին: Դա ինձ շատ օգնեց. սխալներս պակասեցին:

Հիմա ես գիտեմ, որ գրքերն ինձ կօգնեն վերացնելու սխալներս: Ամառվա ընթացքում ես շատ գրքեր եմ կարդացել. Պոլեվոյի «Մենք սովետական մարդիկ ենք», Ֆուրմանովի «Չապաև», Կովպակի «Պուտիվլից մինչև Կարպատ», Ֆադեևի «Երիտասարդ Գվարդիան» և այլն: Ամեն մի գիրք կարդալուց հետո ես շարադրում եմ նրա համառոտ բովանդակությունը:

Ես հիմա զգում եմ, թե գրքերն ինչքա՜ն օգնեցին ինձ: Համոզված եմ, որ այս տարի արդեն ռուսաց լեզվի գրավորից «չորս» և «հինգ» կստանամ:

*ԿԱՐԼԵՆ ՍԱՎԱԴՅԱՆ*
(Ձերժինսկու անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)

## ԳՐՔԻ ՈՒՂԵԿՑՈՒԹՅԱՄԲ

Ես շատ եմ սիրում ճանապարհորդել:

Անչափ հետաքրքիր է լինել հեռավոր վայրերում, տեսնել նոր երկրներ, ծանոթանալ նոր մարդկանց և նրանց սովորությունների հետ:

Բայց ես դեռ փոքր եմ, սովորում եմ դպրոցում և առայժմ չեմ կարող հեռավոր ճանապարհորդության գնալ: Երբ մեծանամ, դպրոցն ավարտեմ, անպայման կճանապարհորդեմ. իսկ առայժմ ես ճանապարհորդում եմ գրքերի միջոցով: Նստած եմ սեղանի առաջ, բայց Միկլուխո Մակլայի հետ շրջում եմ Նոր Գվինեայում, զրուցում պապուասների հետ, Լազարևի նավով կտրում օվկիանոսները և հասնում հեռավոր ու սառցապատ Անտարկտիդա:

Ես շատ եմ սիրում կարդալ նաև Ժյուլ Վեռնի, Բելյաևի և մյուս գրողների գիտա-ֆանտաստիկական գրքերը: Այդպիսի գրքեր շատ եմ կարդացել, բայց դեռ ինչքա՜ն էլ կա կարդալու: Իմ ազատ ժամերը ես անց եմ կացնում Խնկո Ապոր անվան մանկական գրադարանում: Այնտեղ դեռ շատ գրքեր կան, որոնց ուղեկցությամբ ես դեռ կլինեմ աշխարհի զանազան մասերում:

*ՎԱԶԻԿ ԱՎԱԳՅԱՆ*
(Աբովյանի անվան դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)



Պուշկինի անվան դպրոցի աշակերտուհիներ՝ Նելլի Ինվոյանը և Ժաննա Հակոբյանը Խնկո Ապոր անվան գրադարանում:

# ԻՄ ՍԻՐԵԼԻ ԸՆԿԵՐՆԵՐԸ

Երբ հայրս ինձ համար նոր գիրք է գնում, ըզգում եմ, թե ինչպես ես մի նոր ընկեր էլ ունեցա։ Չէ՞ որ լավ գրքի հետ էլ մտերմանում ես այնպես, ինչպես լավ ընկերոջ հետ, որից սովորում ես, խորհուրդներ հարցնում։ Իմ գրադարանում ես հարյուրից ավելի գիրք ունեմ, բոլորն էլ ինձ համար սիրելի են և հարազատ։ Ահա նրանցից մեկն ինձ պատմում է Օլեգ Կոշևոյի կյանքի մասին։ Օլեգին ես գիտեի դեռ «Երիտասարդ Գվարդիա» վեպից, բայց Ե. Կոշևայայի գրքով ես ծանոթացա նաև նրա մանկությանը։ Իմացա, թե ինչպես է կազմակերպվել այդ խիզախ երիտգվարդիականի բնավորությունը տանը և դպրոցում։ Ես շատ եմ սիրում նաև Կոսմոդեմյանսկայայի մոր «Պատմվածք Զոյայի և Շուրայի մասին» գիրքը, Գայդարի և ուրիշ շատ գրողների գրքերը։

Իսկ հեքիաթնե՞րը...

Ես կարդացել եմ Անդերսենի, Գրիմ եղբայրների, Թումանյանի և ռուսական ու հայկական ժողովրդական հեքիաթները։

Ամեն ինչի մասին կարելի է իմանալ գրքերից։ Ես գիրք շատ եմ սիրում. նրանք իմ լավ ընկերներն են։

*ՆԵԼԼԻ ՏԻՍԱՆՅԱՆ*
(Պուշկինի անվան դպրոցի 5-րդ դասարանի աշակերտուհի)



Լենինականի պիոներների տան ընթերցասրահում։

**Ֆոտո Վ. ՓԻՉԽՈՒԼՅԱՆԻ**




# ԵՂԻՐ ՊԱՏՐԱՍՏ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԵՎ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ

*Ա. ԱԼԵՔՍԱՆԴՐՅԱՆ*

*Նկ. Տ. ՍՅՈՒԴՋՅԱՆԻ*

*Գագիկն առաջին անգամ չէր, որ ներկա էր լինում սպորտային խաղերին. բայց այսօրվա տեսածը նրա վրա մեծ տպավորություն թողեց։ Նա լարված հետևում էր լավագույն մարմնամարզիկներին, ծանրություն բարձրացնողներին, բռնցքամարտիկներին։ Նրան հուզեց նաև վազքադաշտի, թռիչքի ու նետումների բաժանմունքների սպորտային պայքարը։ «Ես բռնցքամարտիկ պիտի դառնամ» որոշեց Գագիկը, բայց տեղն ու տեղը, փոխեց իր որոշումը. «Ոչ, ավելի լավ է թեթև ատլետ»։*

*Սպորտը գրավեց Գագիկին։ Մի քանի օր հետո դպրոցում սպարտակիադա պետք է լիներ։ Գագիկը որոշեց մասնակցել։ Նա ուզում էր իր ուժերն այս անգամ փորձել վազքի մեջ։ Մրցության օրը, իր ընկերների հետ դուրս եկավ նաև Գագիկը։ Դատավորը սուլեց։ Վազողները նետվեցին առաջ։ Շուտով խմբից անջատվեց և առաջ անցավ մանուշակագույն մայկա հագած մի պատանի։*

*— Այդ մեր Գագիկն է,— հանկարծ զարմացած բացականչեցին նրա դասընկերները։*

*Բայց ուրախանալը դեռ վաղ էր։ Կես ճանապարհին, Գագիկը սկսեց ետ ընկնել և շուտով կանգ առավ։ Նրա ընկերներն ավելի զարմացան։*





Ֆիզկուլտուրայի ուսուցիչ ընկեր Մամիկոնյանն իր մոտ կանչեց Գագիկին ու մյուս տղաներին և սկսեց բացատրել։

— Երեխանե՛ր, լավ սպորտսմեն կարող է դառնալ միայն նա, ով համառորեն մարզվում է, ֆիզիկապես կոփվում։ Դրա համար պետք է զբաղվել սպորտի մի քանի ձևերով։ Մեր բոլոր լավագույն սպորտսմենները, չեմպիոնները, ռեկորդսմենները հենց այդպես են անում։ Օրինակ՝ Սովետական Միության լավագույն մարմնամարզիկներից մեկը՝ Հրանտ Շահինյանը մարմնամարզությունից բացի, զբաղվում է նաև վազքով, սպորտային խաղերով։ Այդպես են անում նաև ուրիշները։

— Իսկ մենք ինչպե՞ս կարող ենք ընդհանուր ֆիզիկական կոփվածություն ձեռք բերել,— հարցրին երեխաները։

— Դրա համար հարկավոր է նախապատրաստվել և հանձնել ԵՊԱՊ-ի նորմաները,— պատասխանեց ընկեր Մամիկոնյանը,— ՊԱՊ-ի և ԵՊԱՊ-ի կոմպլեքսները ընդգրկում են սպորտի զանազան ձևեր, որոնք զարգացնում են ուժը, արագաշարժությունը, ճարպկությունը, դաստիարակում են համարձակություն, համառություն։ Ահա թե ինչու, ովքեր հանձնեն այդ նորմաները իսկապես պատրաստ կլինեն աշխատանքի և մեր հայրենիքի պաշտպանության։





Ընկեր Մամիկոնյանը դպրոցականներին շատ բան պատմեց։ Երեխաներն իմացան, որ ԵՊԱՊ-ի կրծքանշան ստանալու համար հարկավոր է հանձնել 7 նորմա, որոնցից 4-ը ընդհանուր են։ Դրանք պարտադիր են բոլորի համար, իսկ մնացած երեքը՝ հանձնողն ինքն իր ցանկությամբ կարող է ընտրել։

— Իսկ ո՞ր նորմաներն են պարտադիր,— հարցրեց Ռազմիկը։

— Պարտադիր են մարմնամարզությունը, որն իր մեջ ընդգրկում է լիցքային տիպի 8 վարժություն և պարանով 3 մետր մագլցել։ Այնուհետև պետք է հաղթահարել դիմադրության գոտին 100 մետր երկարությամբ, լողալ 50 մետր, վազել 1000 մետր տարածություն։

— Երեքշաբթի և կիրակի օրերը եկեք պարապմունքի,— վերջում ասաց ընկեր Մամիկոնյանը։

Դրանից հետո մեծ թվով երեխաներ սկսեցին հաճախել խմբակի պարապմունքներին ԵՊԱՊ-ի կոմպլեքսը հանձնելու համար։ Շատերի հետ մարզվում էր նաև Գագիկը։ Սկզբում նա շատ էր դժվարանում։ Վազքի ժամանակ երբեմն նրան թվում էր, թե օդ չկա շնչելու, ուժերը սպառվում էին։ Բայց նա աստիճանաբար սկսեց ավելի թեթև անցնել նշված տարածությունը։ Հատկապես համառություն ցույց տվեց նա երկարության թռիչքի մեջ։





Գագիկին և նրա ընկերներին մեծ օգնություն ցույց տվեց ընկեր Մամիկոնյանը։ Նա ամեն անգամ գրի էր առնում մարզումների արդյունքները և ցույց տալիս աշակերտների սխալները։

Վերջապես հասավ սպասվող օրը։ Գագիկն այդ օրը լավ է հիշում։ Նա հաջողությամբ հանձնեց ԵՊԱՊ-ի առաջին աստիճանի նորմաները։ Մի քանի օր հետո հանձնեց վազքի, թռիչքի, նռնակի նետման նորմաները։ Նա նռնակը 28 մետրի փոխարեն նետեց 30 մետր։ Եվ ահա կոմպլեքսի 7 նորման հանձնված է։

Նորմաները հանձնած աշակերտներն ստացան ԵՊԱՊ-ի կրծքանշանները։ Նրանց շնորհավորեց դպրոցի դիրեկտորը.

— Ապրեք, տղանե՛ր,— սպորտի հիմունքներին դուք արդեն տիրապետել եք։ Այժմ կարող եք համարձակ կերպով մասնակցել սպորտային մրցումներին։



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՔԱՅԼԵՐԳ

Խոսք՝ Ա. ՍԱՐՈՅԱՆԻ

Երաժշտություն՝ ՎԱՐԴԱՆ ՏԻԳՐԱՆՅԱՆԻ

Քայլերգի տեմպով

f

dim.

mf

Ինչ-քան պայծառ, վառ է ներ-կան, Ի՜նչ ու-րախ է կյան-քը մեր,

cresc.

Մերն է մերն է լույս ա-պա-գան Մենք պա-տա-նի պիո-ներ-ներ.

Կրկներգ

Մեր կուռ շար-քե-րով ա-ռաջ, ա-ռաջ, ա-ռաջ. Մեր վառ եր-գե-րով ա-ռաջ, ա-ռաջ, Քայ-լենք դե-պի լույս գա-լիք,

f

mf

Ալ դրոշ-նե-րը մեր պար-զած. մեր պար-զած.

Coda. Վերջավորության համար

f

Միշտ զգում ենք մենք գուրգուրանք
Ու ջերմ սերը մայր երկրի,
Մենք աճում ենք, մենք դառնում ենք
Մեր մեծ երկրին արժանի: } 2 անգամ.

Կրկներգ. Մեր կուռ շարքերով առաջ,
Մեր վառ երգերով առաջ,
Քայլենք դեպի լույս գալիք
Ալ դրոշները մեր պարզած: } 2 անգամ.

Կյանքն այս ուրախ, ջինջ ու պայծառ
Հոկտեմբերն է մեզ տվել,
Նոր դպրոցներ, երգ ու ճամբար
Նա է բերել մեզ նվեր: } 2 անգամ.

Կրկներգ

Հնչիր շեփոր, մենք քայլում ենք
Պիոներական կուռ շարքով,
Լինենք այնպես, որ մեզանից
Առաջնորդը լինի գոհ: } 2 անգամ.

Կրկներգ

---

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## 1. ՉՈՐՍ ԿՇՌԱՔԱՐ

Գտեք չորս այնպիսի կշռաքարեր, որոնց միջոցով հնարավոր լինի կշռել 1-ից մինչև 40 կիլոգրամ ծանրություն:



## 2. ԿԵՆԴԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԿՐՈՍ-ՉԱՅՆՎՈՐԴ

Փորձեցեք այս շրջագծերի բաց թողած վանդակները լրացնել այնպիսի տառերով, որ առաջին անիվ-շրջագծում ստացվի՝

գ-ա—կապիկի տեսակ.
ա-ծ—գիշատիչ գազան.
ծ-կ—չվող թռչուն.
կ-ս—թանկարժեք մորթի ունեցող կենդանի.
ս-գ—աշխարհի գեղեցիկ թռչուններից մեկը:

Երկրորդ անիվ-շրջագծում՝

ա-ս—խոռամանկ կենդանի.
ս-կ—չվող թռչուն.
կ-կ—մեզ մոտ ձմեռող թռչուն.
կ-կ—մարդանման կենդանի.
կ-ա—զրահապատ կենդանի:



## 3. ՌԱԴԻՈ-ԼԱՄՊԵՐ



Այս լամպերը իրենց տեղերում դասավորեցեք այնպես, որ ստացվի մի լոզունգ:

## 4. ԿԱՐՈ՞Ղ Է ՊԱՏԱՀԵԼ

Մի մարդու հարցրին.
— Քանի՞ տարեկան եք:
Նա պատասխանեց.
— Մեր ընտանիքի մի անդամից մեծ եմ վեց հարյուր անգամ:
Կարո՞ղ է այդպիսի բան պատահել:



### 5. ԱՐԵՎԻ ՆԿԱՐ

Նկարչական լավ թղթի կամ ստվարաթղթի վրա ճշտությամբ արտանկարեցեք այս սև մասնիկները և զգուշությամբ կտրեցեք: Տրված ձևով արտանկարեցեք նաև ձվածիրը: Այնուհետև աշխատեցեք կտրած մասնիկները ձվածրի մեջ դասավորել այնպես, որ ձվածրի կենտրոնում ազատ մնացած տարածությունը արևի նկար դուրս գա:

### 6. ԲԱԺԱՆԵՑԵՔ ՄԱՍԵՐԻ

Դպրոցական հողամասն ունի ուղղանկյուն ձև, որի մեկ ութերորդ մասը զբաղեցնում է դպրոցն իր բակով և սպորտ հրապարակով, մյուս մեկ ութերորդ մասը զբաղեցնում է անտառամասը, իսկ հողամասի մնացած տարածությունը, այսինքն վեց ութերորդ մասը, որոշեցին փորձադաշտ դարձնել պիոներական ջոկատների համար:



Հողամասը կտրում անցնում է մի գետակ, որի ափերին աճել են 8 ծառ: Պիոներները ուզեցին փորձադաշտի համար հատկացված ամբողջ տարածությունը բաժանել 8 հավասար մասերի, այնպես, որ բոլոր հողամասերում էլ մնա մեկական ծառ և գետակը բոլոր հողամասերից էլ անցնի:

Սկզբում խնդիրը թվաց բարդ, բայց շուտով մի քիչ մտածելուց հետո պիոներները երկրաչափական մի պարզ ձևի միջոցով կատարեցին առաջադրանքը:

---


„ПИОНЕР“

№ 10

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, октябрь, 1951 г. Ереван





*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 05082, Պատվեր 565. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 10/X—51 թ.*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Շապիկի առաջին էջի նկարը Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Չորրորդ էջի նկարը Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

# 1951 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆԸ

ետերբուրգի բնակիչները 1873 թվականին հավաքվել էին քաղաքի հրապարակներից մեկում: Նրանք անհամբեր սպասում էին Ալեքսանդր Նիկոլաևիչ Լոդիգինին: Այդ օրը, աշխարհում առաջին անգամ պետք է վառվեին էլեկտրական լամպերը: Շատերը չէին հավատում այդ «հրաշքին»:

Քիչ հետո երևաց Ալեքսանդր Նիկոլաևիչը: Էլեկտրական սարքավորման մոտ կանգնած էին ռուս գիտնականները: Տրվեց ազդանշան: էլեկտրական լամպի մետաղալարը շիկացավ: Ալեքսանդր Նիկոլաևիչի աչքերը ուրախությունից փայլեցին: Մարդիկ շտապեցին սեղմել գիտնականի ձեռքը:

Ռուս գյուտարարի համբավը շուտով տարածվեց ամբողջ աշխարհում: Լոդիգինը իր լամպերն ուղարկեց Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, Բելգիա, Իսպանիա, նույնիսկ Հնդկաստան:



Լոդիգինի գյուտից վեց տարի հետո՝ 1879 թվականին է միայն, որ ամերիկացի գիտնական Էդիսոնը պատրաստում է իր էլեկտրական լամպը: Ռուսական գյուտի առաջնության մասին խոսում էր նաև այն ժամանակվա համաշխարհային մամուլը:

Սակայն ցարական Ռուսաստանը ուշադրություն չդարձրեց այդ արժեքավոր գյուտի վրա: 1875 թվականին անվանի գիտնականն ստիպված եղավ աշխատել որպես փականագործ: Կարիքից ստիպված նա մեկնեց Ֆրանսիա, ապա Ամերիկա: Միայն ռուս-ճապոնական պատերազմի ծանր օրերին Լոդիգինը հայրենիք վերադարձավ և մինչև իր մահը մնաց այնտեղ:

## 250 ՕՐ

ևաստոպոլը ռուսական փառքի ամրոցն է Սև ծովի ափին: Դեռ 1853—56 թվականների ռուս-թյուրքական պատերազմի ժամանակ ռուս նավաստիները հերոսաբար պաշտպանում էին իրենց ամրոցը: Բայց




այդ քաղաքը դեռ չէր տեսել այնպիսի հերոսական պաշտպանություն, ինչպես գերմանական ֆաշիզմի դեմ մղվող Հայրենական Մեծ պատերազմի օրերին:

1941 թվականի նոյեմբերին թշնամու նավերը ներխուժեցին Սև ծով և պաշարեցին Սևաստոպոլը: Սևծովյան նավատորմի քաջարի նավաստիները իրենց արյան գնով էին պաշտպանում Սովետական հողի ամեն մի թիզը: Նրանցից շատերը զոհվեցին հայրենի քաղաքի պաշտպանության դիրքերում: Այդ ծանր օրերին մեր մարտիկները ցույց տվեցին իրենց անընկճելի կամքը: Սովետական նավաստիներն ու զինվորները 250 օր շարունակ անհավասար մարտ էին մղում: Ութ ամսվա ընթացքում գերմանացիները Սևաստոպոլի մոտ կորցրին 300 հազար զինվոր և սպա: Մեր ամբողջ երկիրը հետևում և օգնություն էր ցույց տալիս Սևաստոպոլի հերոս պաշտպաններին:

Սովետական Միության Գերագույն Սովետի Հրամանագրով Սևաստոպոլը, ինչպես նաև Մոսկվան, Լենինգրադը, Ստալինգրադը և Օդեսսան հերոս քաղաքներ կոչվեցին:

# ԵՐԿՈՒ ԴԻԱՖԻԼՄ



Աշոտիկը միշտ վաղ զարթնում,
Մարզվում է և ջրով շփվում:



Սեղանի մոտ նստած անդ,
Իր դասերը սերտում է նա:



Նոր, լուսավոր դասարանում
Սիրով դաս է պատասխանում:



Հինգերի հետ ուրախ ու զոհ,
Տուն է գնում դասից հետո:



Տես Պետիկը անուշադիր,
Դեռ փնտրում է հագուստը իր:



Ժամանակն է առաջ սահում,
Բայց նա դասով չի զբաղվում:



Ուսուցչի մոտ կանգնած ահա,
Դաս չգիտի, ի՞նչ պատմի նա...



Շրջապատված երկուսներով,
Տուն է գնում մտածելով: